ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ






# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ  1990

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ



1
ՀՈՒՆՎԱՐ
1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

**Խմբագրության հասցեն՝**
**375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2**

**ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝**

գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

**Բաժիններ**

մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թողարկիչ, սրբագրիչ՝ 53—86—11



# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի դեկտեմբերի 9-ին կայացավ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հերթական պլենումը: Պլենումի քննարկմանն էին ներկայացվել հետևյալ հարցերը՝

1. ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարի հարցերը:
2. ԽՄԿԿ Կենտկոմի Ռուսաստանի բյուրո կազմելու մասին:
3. Դուրս եկած դեպուտատի փոխարեն Խորհրդային Միության կոմունիստական կուսակցությունից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուի առաջադրման մասին և ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատի ընտրությունների նշանակման մասին:
4. Խորհրդային ժողովրդին, կոմունիստներին ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմումի մասին:

Առաջին հարցի առթիվ հաղորդումներով հանդես եկան ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը և ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովը:

Երկրորդ հարցի առթիվ՝ «ԽՄԿԿ Կենտկոմի Ռուսաստանի բյուրո կազմելու մասին», հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումում ելույթ ունեցան ԽՄԿԿ Լենինգրադի մարզկոմի ու քաղկոմի առաջին քարտուղար Բ. Վ. Գիդասպովը, ԽՄԿԿ Մոսկվայի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Կ. Մեսյացը, Ղազախստանի կոմկուսի Հյուսիսային Ղազախստանի մարզկոմի առաջին քարտուղար Ս. Ա. Մեդվեդևը, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ն. Ն. Սլյունկովը, Ուկրաինական ԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Վ. Ա. Մասոլը, Անդրկովկասի զինվորական օկրուգի զորքերի հրամանատար Վ. Ա. Պատրիկեևը, ԽՄԿԿ Կեմերովոյի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Գ. Մելնիկովը, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան պետական համալսարանի ռեկտոր Ա. Ա. Լոգունովը, Բելոռուսիայի կոմկուսի Մինսկի մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ա. Մալոֆեևը, ԽՍՀՄ ներքին գործերի մինիստր Վ. Վ. Բակատինը, Լենինգրադի «Պոզիտրոն» գիտաարտադրական միավորման միկրոսխեմաներ հավաքող Տ. Ի. Սնետկովան, ԽՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ա. Պրոկոֆևը, Մեծ Բրիտանիայում ԽՍՀՄ-ի արտակարգ ու լիազոր դեսպան Լ. Մ. Զամյատինը, ռազմական խորհրդի անդամ, Մերձբալթիկայի զինվորական օկրուգի քաղվարչության պետ Օ. Վ. Զինչենկոն, ԽՄԿԿ Կույբիշևի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Գ. Աֆոնինը, ԽՍՀՄ գրողների միության վարչության քարտուղար Ա. Բ. Չակովսկին, ԽՄԿԿ Ռյազանի մարզկոմի առաջին քարտուղար Լ. Ի. Խիտրունը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահ Ա. Վ. Վլասովը, ԽՄԿԿ Խաբարովսկի երկրկոմի առաջին քարտուղար Վ. Ս. Պաստեռնակը, ԽՄԿԿ Կրասնոդարի երկրկոմի առաջին քարտուղար Ի. Կ. Պոլոզկովը, ՌՍՖՍՀ Գերագույն խորհրդի նախագահության նախագահ Վ. Ի. Վորոտնիկովը, ԽՍՀՄ գրողների միության վարչության առաջին

քարտուղար Վ. Վ. Կարպովը, ԽՄԿԿ Տոմսկի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Զորկալցևը:

Քննարկված հարցերի առթիվ պլենումն ընդունեց համապատասխան որոշումներ:

Պլենումը դուրս եկած դեպուտատի փոխարեն Խորհրդային Միության կոմունիստական կուսակցությունից առաջադրեց ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատության թեկնածուներ և որոշում ընդունեց ԽՄԿԿ-ից ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատի ընտրությունները Կենտկոմի առաջիկա պլենումում անցկացնելու մասին:

Պլենումն ընդունեց «Խորհրդային ժողովրդին, կոմունիստներին» ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի դիմում:

Պլենումը քննարկեց կազմակերպական հարցեր:

Պլենումը Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ա. Իվաշկոյին ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ:

Պլենումը Ի. Տ. Ֆրոլովին ընտրեց ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար և հաստատեց «Պրավդա» թերթի գլխավոր խմբագիր:

Դրանով ԽՄԿԿ Կենտկոմի պլենումն ավարտեց իր աշխատանքը:

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1989 թվականի դեկտեմբերի 25-26-ը տեղի ունեցավ ԽՄԿԿ Կենտրոնական կոմիտեի արտահերթ պլենումը: Պլենումը քննարկեց Լիտվայի կոմկուսի XX համագումարի որոշումների հետ առնչված հարցերը:

Պլենումում զեկուցումով հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

Պլենումում ելույթ ունեցան Լիտվայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.— Մ. Կ. Բրազաուսկասը, Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ-ի պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմի քարտուղար, Վիլնյուսի պետական մանկավարժական ինստիտուտի պրոֆեսոր Մ. Մ. Բուրոկյավիչյուսը, Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա.— Ռ. Խ. Վեզիրովը, Ղազախստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ն. Ա. Նազարբաևը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի քարտուղար Յու. Ն. Ելչենկոն, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Վ. Ա. Մեդվեդևը, Բելոռուսիայի կոմկուսի Վիտեբսկի մարզկոմի առաջին քարտուղար Վ. Վ. Գրիգորևը, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Ե. Կ. Լիգաչովը, Կիրգիզիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Մ. Մասալիևը, Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ա. Իվաշկոն, Էստոնիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Վյալյասը, ԽՍՀՄ հեռուստատեսության և ռադիոհաղորդումների պետական կոմիտեի նախագահ Մ. Ֆ. Նենաշևը, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ, ԽՍՀՄ պետպլանի նախագահ Յու. Դ. Մասլյուկովը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի նախկին քարտուղար Վ. Ս. Բալտրունասը, ԽՍՀՄ պետական անվտանգության կոմիտեի նախագահ Վ. Ա. Կրյուչկովը, Լատվիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Յա. Վագրիսը, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Գ. Պ. Ռազումովսկին, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի երկրորդ քարտուղար Վ. Ա. Բերյոզովը, ԽՄԿԿ Դաղստանի մարզկոմի առաջին քարտուղար Մ. Յու. Յուսուպովը,



զինվորական խորհրդի անդամ, Բալթյան նավատորմի քաղվարչության պետ Ա. Ի. Կորնիենկոն:

Պլենումի որոշման նախագծի մշակման հանձնաժողովի կողմից հանդես եկավ ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղար Վ. Ա. Մեդվեդևը:

Պլենումում այնուհետև ելույթ ունեցան ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի փոխպրեզիդենտ, ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի Սիբիրի բաժանմունքի նախագահ Վ. Ա. Կոպտյուգը, ԽՄԿԿ Մոսկվայի քաղկոմի առաջին քարտուղար Յու. Ա. Պրոկոֆևը, Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ-ի պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմի քարտուղար, Վիլնյուս քաղաքի Հոկտեմբերյան կուսշրջկոմի առաջին քարտուղար Վ. Ն. Շվեդը, Լիտվայի կոմկուսի (ԽՄԿԿ-ի պլատֆորմով) ժամանակավոր Կենտկոմի քարտուղար, Լիտվական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության խորհրդական Յու. Յու. Կուոլյալիսը, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Ազգությունների խորհրդի նախագահ Ռ. Ն. Նիշանովը, ԽՄԿԿ Տյումենի մարզկոմի առաջին քարտուղար Գ. Պ. Բոգոմյակովը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի նախկին քարտուղար Բ. Ա. Ջայկաուսկասը, ԽՍՀՄ արտաքին գործերի մինիստրի տեղակալ Վ. Մ. Նիկիֆորովը, Լիտվայի կոմկուսի Կենտկոմի նախկին քարտուղար Ս. Ա. Գեդրայտիսը, Բելոռուսիայի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ե. Ե. Սոկոլովը, ԽՄԿԿ Ադիգեյական մարզկոմի առաջին քարտուղար Ա. Ա. Ջարիմովը (Կրասնոդարի երկրամաս), Լիտվական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության նախագահ Վ. Ս. Աստրաուսկասը, ԽՍՀՄ գրողների միության վարչության առաջին քարտուղար Վ. Վ. Կարպովը, ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր կուսակցական վերահսկողության կոմիտեի նախագահ Բ. Կ. Պուգոն, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի շինարարության և ճարտարապետության հարցերի կոմիտեի նախագահ Բ. Ն. Ելցինը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի առաջին տեղակալ Ե. Ի. Սիզենկոն, ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջին քարտուղար Վ. Ի. Միրոնենկոն, Մոսկվայի Ս. Վ. Իլյուշինի անվան մեքենաշինական գործարանի գլխավոր կոնստրուկտոր Գ. Վ. Նովոժիլովը, ՌՍՖՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ Վ. Գ. Զախարովը, Ուկրաինայի կոմկուսի Լվովի մարզկոմի առաջին քարտուղար Յա. Պ. Պոգրեբնյակը, ՌՍՖՍՀ թատերական գործիչների միության վարչության նախագահ Մ. Ա. Ուլյանովը, ՀԱՄԿԽ-ի քարտուղար Վ. Մ. Միշինը, Ուկրաինայի կոմկուսի Դնեպրոպետրովսկի մարզկոմի առաջին քարտուղար Ն. Կ. Զաղոյան, ԽՄԿԿ Լենինգրադի մարզկոմի երկրորդ քարտուղար Ա. Մ. Ֆատեևը, ՌՍՖՍՀ Գերագույն խորհրդի նախագահության նախագահի տեղակալ Տ. Գ. Իվանովան:

Քննարկված հարցի առթիվ պլենումն ընդունեց որոշում:

Պլենումի վերջում ելույթ ունեցավ ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովը:

---

կոմիտեները՝ ԽՄԿԿ-ի մարմիններ: Հենց այդ հիման վրա էլ կառուցվելու են հա-
րաբերությունները կուսակցության ներսում:
Չեմ թաքցնի, որ այս պլենումի նախօրյակին կարծիքների նախնական փոխա-
նակության ընթացքում դիրքորոշումների մեջ տարբերություններ դրսևորվեցին: Մի
շարք ընկերներ գտնում են, որ XX համագումարի որոշումները պետք է ընդունել
որպես կատարված փաստ, հանրապետությունում իրադարձություններին հնարա-
վորություն տալ ընթանալու իենց ուզած ձևով, մեր վերաբերմունքը սահմանափա-
կելով քաղաքական գնահատականով: Ավելին, նրանք առհասարակ ոչ մի դրամա-
տիկ բան չեն տեսնում այդ իրադարձությունների մեջ, կարծելով, որ խորհրդային
ֆեդերացիայի դեմոկրատացման տրամաբանությունը, միևնույն է, վաղ թե ուշ
մեզ կմղի նույնանման քայլերի նաև մյուս հանրապետություններում: Որոշ ընկեր-
ներ էլ, ընդհակառակը, խիստ դիրք են բռնել. բախտախաղի է դրված կուսակցու-
թյան ու պետության ամբողջականությունը: Դրա պահպանումը, գտնում են նրանք,
արդարացված է ամեն մի միջոցով: Մասնավորապես առաջարկվում է ցրել հան-
րապետական կուսկազմակերպությունը, կատարել դրա վերագրանցում: Լիտվայի
կոմկուսի Կենտկոմի ֆունկցիաների ժամանակավոր կատարումը հանձնարարել
ստեղծված կազմկոմիտեին, նրա տրամադրության տակ դնելով ԽՄԿԿ-ի բոլոր
նյութական ռեսուրսներն ու միջոցները, ներառյալ մասսայական ինֆորմացիայի
միջոցները, կուսակցական տպարանները, շենքերը և այլն:
Այս առաջարկություններից յուրաքանչյուրն ունի իր տրամաբանությունը, բայց
յուրաքանչյուրն ունի նաև իր թուլությունը: Կարծում եմ, որ մենք պետք է առավե-
լագույն զսպվածություն, կշռադատություն և զգուշավորություն հանդես բերենք,
հնարավորություն տանք հանդարտեցնելու հույզերը և վերադառնանք ողջամտու-
թյանը: Այս նկատառումը բնավ էլ հիմնազուրկ չէ: Դա ուղղված է հանրապետու-
թյան կոմունիստների թե այն մասին, ովքեր շարունակում են մնալ ինտերնացիո-
նալիստական դիրքերում, պաշտպանում են ԽՄԿԿ-ի միասնությունը և թե այն կո-
մունիստներին, ովքեր հայտնվել են ճամփաբաժանում, բայց չեն կորցրել իրենց
կոմունիստական համոզմունքները, պատրաստ են մեկ անգամ էլ քննադատաբար
կշռադատել կատարած քայլը:
Եկեք կոլեկտիվ կերպով կարծիքներ փոխանակենք այս հարցի առթիվ: Կար-
ծում եմ, ճիշտ կլիներ ստեղծված իրավիճակը քննարկել հանրապետության բոլոր
կուսկազմակերպություններում, ավելի լրիվ ու ճիշտ ի հայտ բերել ուժերի և կար-
ծիքների ամբողջ սպեկտրը: Մենք ելնում ենք այն բանից, որ հանրապետություն-
ների կոմկուսների ինքնուրույնությունը նույնքան հնարավոր ու ցանկալի է ԽՄԿԿ-ի
շրջանակներում, որքան և հանրապետությունների սուվերենությունը նորացված ֆե-
դերացիայի շրջանակներում: Ընդ որում, առաջիկա աշխատանքում ամենքիս, կո-
մունիստներիս համար գլխավոր փաստարկը, մեր կարծիքով, լենինյան ազգային
քաղաքականության կոնցեպցիան է, որի հանդեպ հավատարմությունը մենք ձեզ
հետ վերջերս կրկին հավաստեցինք Կենտկոմի պլենումում: Խորհրդային ֆեդե-
րացիայի արմատական նորացումն է ազատ և ինքնակառավարվող Լիտվայի ռեալ
ուղին:
Կուսակցության ազգային քաղաքականության առանցքը ազգերի ինքնորոշման
մասին մարքսիստական դրույթն է:
ԽՄԿԿ Կենտկոմի պլենումում մենք տվեցինք այդ դրույթի ժամանակակից մեկ-
նաբանությունը, ընդգծելով, որ դա բնավ էլ չի սահմանափակվում այս կամ այն
ժողովրդի տարածքի, պետական կարգավիճակի հարցերով:
Բնորոշ է, որ Լիտվայի կոմկուսի XX համագումարին ներկայացված Կենտկո-
մի զեկուցման մեջ միանգամայն իրավացիորեն նշվում է. «Պետականությունը չի
կարելի բացարձականացնել,— ես մեջ եմ բերում ընկեր Բրազաուսկասի զեկուց-
ման մեջ ասված խոսքերը,— պետականությունը ազգի գոյատևման և նորմալ գո-
յության միջոց է և ոչ թե ինքնանպատակ»: Շարունակում եմ նրա իսկ խոսքերը,
«Իսկական նպատակը հասարակության դեմոկրատացումն է, սոցիալական հավա-
սարությունը, այն պայմանները, որոնցում առավելագույնս իրացվում են մարդկանց
նյութական ու հոգևոր պահանջմունքները, բացահայտվում է նրանց ստեղծագոր-
ծական պոտենցիալը»:
Ճիշտ խոսքեր են: Առավել ևս անհասկանալի է, թե լիտվացի կոմունիստների
ղեկավարներն իրենց գործունեության մեջ ինչու՞ են կանգնել հենց պետականու-
թյան բացարձականացման դիրքերի վրա:
Եվ մի՞թե վերակառուցումը չի ազդարարում մեր Միության, սոցիալիստական



ֆեդերացիայի այդպիսի նորացում, երբ հենց յուրաքանչյուր ժողովրդի ստեղծա-
գործական պոտենցիալի բացահայտումն է դառնում գերագույն նպատակը, ձեռք
բերում այդ նպատակի իրագործման մեխանիզմ: Չէ որ հենց այդ մոտեցումն է իր
արտացոլումը գտել խորհրդային հասարակության քաղաքական ռեֆորմի, հան-
րապետական տնտհաշվարկի կոնցեպցիաներում: Այդ միջոցառումների իմաստն է
կառավարչական որոշումների լայն ապակենտրոնացումը, ավելի ու ավելի մեծ
թվով առաջնային խնդիրների հանձնումը իշխանության տեղական մարմիններին,
մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների իրացման համար պայման-
ների ստեղծումը:
Մի՞թե կարելի է լրջորեն խոսել այդ նույն նյութական պայմանների ստեղծ-
ման մասին, եթե բռնենք Միության հետ Լիտվայի տնտեսական կապերի խզման
ուղին: Իսկ չէ որ հանրապետության պետական անկախության կուրսը անխուսա-
փելիորեն կհանգեցնի այդ կապերի խզմանն ու սահմանափակմանը:
Դեռ ավելին: Արդեն հեռագրեր են ստացվում, մարդիկ հարցնում են. իսկ
ինչպես վարվենք այս դեպքում, եթե նրանք դուրս են գալիս Խորհրդային Միու-
թյունից, իսկ XX համագումարի որոշումները այդպես էլ ընկալվում են: Մենք
պե՞տք է արդյոք պայմանագրեր կնքենք նրանց հետ: Պետք է ամեն ինչ և միշտ
լավ կշռադատել մինչև վերջ:
Ընկեր Բրազաուսկասը իր զեկուցման մեջ խիստ քննադատաբար գնահատեց
Լիտվայի էկոնոմիկայի վիճակը, ասաց. տրեխներով դեպի ինքնուրույնություն գնա-
լը միտինգային հայտարարություն է: Կարծում եմ, որ նա այստեղ խիստ չափա-
զանցրեց: Ոչ, Լիտվան այսօր տրեխներով չէ: Գուցե, երբ նա մտնում էր Խորհըր-
դային Միության մեջ, դեռ կային տրեխներ: Իսկ այսօր՝ ես եղել եմ հանրապե-
տությունում, տեսել, դա բոլորովին էլ այդպես չէ: Այսօր հանրապետությունն
ուրիշ է:
Բայց ակներև է, որ Լիտվայի, ասենք նաև մյուս միութենական հանրապե-
տությունների էկոնոմիկայի ինքնուրույն գոյությունը հեշտ բան չէ: Տնտեսական
կապերը ձևավորվել են հարյուրամյակների ընթացքում: Եվ այդ շուկան նախ ռու-
սաստանյան է եղել, հիմա խորհրդային, միութենական է, չէ որ այս ամենը շատ
երկար ճանապարհի արգասիք է: Մեզ մոտ ինտեգրացման, աշխատանքի բաժան-
ման մակարդակը ավելի բարձր է, քան Եվրոպական տնտեսական միավորման
մեջ: Եթե ըմբոստանանք ռեալ պրոցեսների դեմ, որոնք տեղի են ունենում, սկսենք
կտրել կապերը, ենթարկվելով էժանագին, սենսացիոն հայտարարությունների սի-
րահարների հորդորներին, ապա դա նշանակում է պարզապես կործանել հան-
րապետությունը:
Ըստ իս, ես արդեն ինչ-որ առիթով ասել եմ, բայց քանի որ այս հարցը դրված
է օրակարգում, ապա արժե մեկ անգամ էլ կրկնել հետևյալը. այսօր Միության շըր-
ջանակներում Լիտվան սև մետաղների իր պահանջարկը բավարարում է 74 տո-
կոսով, գունավոր մետաղներինը՝ 97 տոկոսով, նավթինն ու գազինը՝ 77, քիմիայի-
նը՝ 75, ածխինը՝ 100 տոկոսով: Ամբողջությամբ վերցրած հանրապետությունը ներ-
մուծում է 7 միլիարդ ռուբլու ռեսուրսներ:
Լիտվան, իհարկե, քիչ բան էլ չի արտահանում՝ գրեթե վեց միլիարդ ռուբլու
հիմնականում գյուղատնտեսական մթերքներ, թեթև արդյունաբերության արտա-
դրանք: Կայուն կապեր են հաստատվել միութենական շուկայի շրջանակներում:
Հանրապետության ժողովրդական տնտեսությունը նոր է թևակոխում արտադրա-
կան ապարատի նոր ինտենսիվ նորացման ժամանակաշրջան: Ոչ մի հանրապե-
տական տնտհաշվարկ չի ծածկի այստեղ նախատեսվող ծախսերը: Միամիտ են
«Արևմտյան բարի քեռու» հետ կապվող հույսերը: Սրանք են իրողությունները:
Նա, ով զբաղվում է քաղաքականությամբ և ոչ թե հույզերով, լավ է հասկանում,
որ Լիտվայի տնտեսական անջատականությունը ոչ մի նյութական բարօրության
չի հասցնի ու չի կարող հասցնել ոչ այժմ, ոչ էլ տեսանելի ապագայում:
Սա իմ խորին համոզմունքն է: Լիտվայի պետական անկախության մարտիկ-
ները առաջնորդվում են բնավ էլ ոչ տնտեսական բարգավաճման, սոցիալական
հավասարության հոգածությամբ: Խոսքը քաղաքական հավակնությունների և ոչ թե
աշխատավորների շահերի մասին է: Հարկավոր է, ընկերներ, Լիտվայի աշխատա-
վորներին օգնել կողմնորոշվելու, որպեսզի նրանք հասկանան, թե իրականում
փաստորեն խոսքն ինչի մասին է:
Վերակառուցումն առաջացրեց ազգային ինքնագիտակցության սրընթաց աճ,
իրենց պատմության, մշակույթի, լեզվի, ավանդույթների, սովորույթների համար

մեր բոլոր ժողովուրդների ազգային հպարտության զգացում, դարերի խորքից եկող ազգային արժեքները ոչ միայն պահպանելու, այլև բազմապատկելու ջերմ ձգտում: Եվ այդ գործընթացը արժանանում է կուսակցության աջակցությանը, որը անշրջելիորեն դատապարտել է լենինյան ազգային քաղաքականության կոպտագույն խեղաթյուրումները, այն ձևախեղումները, որոնք խոր սպիներ են թողել ազգային ինքնագիտակցության մեջ: Մենք ընդունել ենք, որ խորհրդային սոցիալիստական ֆեդերացիան արմատական նորացման և առողջացման կարիք ունի:

Երկրի տարբեր ռեգիոններում ազգամիջյան հարաբերությունների սրումը ջրի երես հանեց տասնամյակներով կուտակված բազմաթիվ ժողովուրդների և ազգությունների դժգոհությունը իրենց քաղաքական, սոցիալ-տնտեսական և մշակութային վիճակից: Հասարակության դեմոկրատացումը հնարավորություն տվեց այդ դժգոհությունն արտահայտել բացահայտորեն, դուրս տալ հին վիրավորանքների ցավը, ակտիվ ագիտացիա կատարել հանուն ազգային վերածննդի: Բնական ձևով ազգային զգացմունքները կենարար ըմպելիք են յուրաքանչյուր ազգի ու ժողովրդի առողջության համար: Սակայն քաղաքական կուլտուրայի անբավարարության, կրքերի ու հույզերի բռնկման դեպքում ժողովրդի ազգային գիտակցության մեջ է թափանցում ազգայնականության վարակը: Իսկ դա արդեն թույն է, որը վաղ թե ուշ քայքայում է ամեն մի հասարակական օրգանիզմ, ջլատում դրա վարակամերձ համակարգը, ժողովրդի հոգին:

Ազգայնականությունը մեր ժամանակներում հատկապես մակաբուծություն է անում վերակառուցման հետ կապված բնական ազգային զգացմունքների, ազգային վերածնության վրա, ջանում է իր քաղաքական խաղը խաղալ անցյալի ձևախեղումների վրա: Եվ դա երբեմն հաջողվում է: Քանզի այդ ձևախեղումները եղել են, իսկ ազգային զգացմունքները շոշափում են մարդու ոչ միայն բանականությունը, այլև հույզերը:

Բորբոքել հույզերը, դրանք հասցնել կրքերի եռմանը, գիտակցության մեջ ճնշել ամենայն ռացիոնալը, թշնամի գտնել ի դեմս կենտրոնի կամ ուրիշ ազգության մարդկանց մեջ՝ ահա թե ինչն է առավել բնորոշ ազգայնական ձեռնածությունների համար: Թե տեսության, թե քաղաքականության մեջ և թե պրակտիկայում միշտ գոյություն ունի ազգայինը ազգայնականից զատող հստակ սահմանագիծ: Այդ սահմանագիծը վերաբերմունքն է ուրիշ ժողովրդի արժանապատվության, ամբողջ հասարակության շահերի նկատմամբ:

Մի դեպքում դրանք համաձայնեցնելու կարողությունն է, մյուսում ազգային սնապարծությունը:

Հայտնի է, որ ազգային անկախության գաղափարները միշտ էլ ձգողական ուժ են ունեցել և ունեն մասսայական գիտակցության համար: Հատկապես այն պայմաններում, երբ կենսամակարդակը հեռու է բարեկեցությունից, երբ ժողովրդի մեջ մեծ է դժգոհությունը: Այս պայմաններում ազգային զգացմունքը տոգորում է ամեն ինչ. էկոնոմիկան և քաղաքականությունը, մշակույթը և գաղափարախոսությունը: Այն ստիպում է իդեալականացնել սեփականը, կենսականը և դրդում է դժբախտությունների պատճառը որոնել արտաքին, այլազգային գործոններում:

«Արտաքին թշնամու» ֆենոմենը բազմիցս հաջողությամբ օգտագործել են բոլոր ժամանակների ու ժողովուրդների քաղաքական արկածախնդիրները: Միշտ է, մոռացվում է, որ այդ երևույթի չարաշահումը միշտ էլ ժողովրդի համար վերածվել է դաժան ողբերգությունների: Վերջ ի վերջո գալիս էր դառը սթափեցումը: Բայց միշտ դրան նախորդում էին հրճվանքը, արբածությունը, ուտոպիական այն կոնցեպցիան, թե ազատ, անկախ, մաքրագործված ազգային ոգու հաղթանակը հենց երջանիկ կյանքի կառուցման գլխավոր պայմանն է:

Այս հանգամանքները մենք պետք է ուշադրության առնենք նաև Լիտվայի իրադրությունը վերլուծելիս: Անխոհեմություն կլիներ բանը հանգեցնել պիտակներ փակցնելուն, կրքեր բորբոքել: Հարցն ուրիշ է. ինչու՞ նման տրամադրությունները հնարավոր դարձան: Ի՞նչը հող ստեղծեց կենտրոնախույս ձգտումների համար: Ի՞նչ պատճառների բերումով պետական անկախության գաղափարը գերիշխող դարձավ հանրապետության հասարակական գիտակցության մեջ:

Հարցը դյուրին չէ: Եվ դրա պատասխանը որոնելիս հարկավոր է նշել ինչպես օբյեկտիվ, այնպես էլ սուբյեկտիվ գործոնների առկայությունը: Լիտվացի ժողովրդի ազգային ինքնագիտակցության վրա մեծապես ճնշում է գործադրում միութենական պետության հետ իր փոխհարաբերությունների ծանր պատմությունը: Մենք չենք կարող, իրավունք չունենք խուսափել այն անվիճելի ճշմարտության



ընդունումից, որ ստալինյան կամայականության տասնամյակները, մեր երկրում սոցիալիզմի բուն իմաստի ու նկարագրի կոպիտ աղավաղումը, ֆեդերացիայի քողի տակ խստագույնս կենտրոնացված պետության արմատավորումը ամենածանր կերպով էին ազդել Խորհրդային Միության ազգերի և ազգությունների փոխհարաբերությունների բնույթի, նրանց տրամադրությունների վրա: Դրա հետևանքով լրջորեն վարկաբեկվեց ֆեդերացիայի բուն գաղափարը: Բնակչության լայն խավերում, հատկապես միութենական հանրապետություններում, անվստահության և կանխակալության սերմեր ցանվեցին կենտրոնական իշխանության, «Մոսկվայի ծանր ձեռքի» նկատմամբ:

Այս պայմաններում յուրովի օրինաչափ են հանրապետությունների ժողովուրդների փորձերը՝ օգտվելու վերակառուցման ստեղծած հնարավորություններից, նրանց ցանկությունը ստուգելու վերակառուցման սկզբունքների, ինքնուրույնության, հարգանքի և ազատության երաշխիքների իրողությունը, որոնք նա ներմուծում է ազգամիջյան հարաբերությունների ոլորտ:

Այս ամենը հասկանալի է, ինչպես որ հասկանալի է նաև այն, որ ներկայիս իրավիճակից ակտիվորեն օգտվեցին ազգայնական, անջատական, պարզապես հակախորհրդային տարրերը, որոնք իրապես ներկայացված են այսօր մի քանի հանրապետություններում գործող հասարակական ուժերի քաղաքական խայտաբղետ սպեկտրում: Դրանց թվում են նաև այն ուժերը, որոնք լրջորեն երազում են վերականգնել բուրժուական կարգերը, վերադառնալ նախկին, ասենք նաև բնավ ոչ դեմոկրատական, այլ ավելի վաղ գոյություն ունեցած ծայրահեղ աջ, ինքնահեծան վարչակարգերին:

Ստեղծված իրավիճակում, սակայն, առկա է ոչ պակաս կարևոր սուբյեկտիվ կողմը: Այն արտացոլում է ինչպես տեղական կուսակցական կազմակերպությունների, կուսակցական ու պետական ղեկավարների, հասարակական կազմակերպությունների, զանգվածային լրատվության միջոցների, այնպես էլ կենտրոնական մարմինների անհամազոր վերաբերմունքը առկա իրադրության նկատմամբ:

Այստեղ թույլ տրվող որոշ սխալների մասին ես արդեն ասացի Լիտվայի օրինակով: Այժմ կցանկանայի անդրադառնալ դրանցից մեկին: Խոսքը լայն զանգվածների շրջանում որպես ժողովրդականություն նվաճելու միջոցով «ազգային» թեման օգտագործելու մասին է: Տեղին է ասել, որ այդ ճանապարհին միայն Լիտվայի ղեկավարները չէ, որ հասունացել են: «Ազգային կոմունիստների», «ազգային ժողովրդականների» դերում այսօր հանդես են գալիս նաև ուրիշ հանրապետությունների որոշ ներկայացուցիչներ: Բայց ազգային հարցերում «Հռոմի պապից էլ սուրբ» լինելու փորձերը անողոք անհրաժեշտությամբ թելադրում են վարքագծի իրենց տրամաբանությունը: Դրանք պահանջում են սկզբունքային դիրքերից այնպիսի հրաժարում, որն ամլացնում է ինտերնացիոնալիզմի, մարդկանց առողջ փոխհարաբերությունների էությունը:

Ըստ էության, հանրապետության կուսակցական կազմակերպության ղեկավարությունը դարձել է այն անջատականորեն տրամադրված ուժերի պատանդը, որոնք սոցիալիզմի դեմոկրատական նորացման կարգախոսների քողածածկույթի ներքո կկամենային հանրապետությունը տանել բոլորովին այլ ուղիով: Այդ դիրքորոշումը ազգային միասնության պահպանման անհրաժեշտության վկայակոչումներով բացատրելու փորձերը հազիվ թե կարող են համոզիչ համարվել: Մենք կրկին ու կրկին դնելու ենք այն հարցը, թե ի՞նչ հիման վրա, ի՞նչ նպատակներով և ի՞նչ գնով են այստեղ ուզում ապահովել ազգի միասնությունը: Եթե այդ միասնության ապահովումը կամ նվաճումը պետք է հատուցվի դեպի նոր, նորացված սոցիալիզմի ուղիով խորհրդային հասարակության ընդհանուր շարժմանը մասնակցելուց հրաժարվելով, Խորհրդային Միության մյուս ժողովուրդներից խզվելով, ժողովրդի պատմական ընտրության իմաստն ու արժեքները սկզբունքորեն փոխելով, ապա առնվազն ժողովրդին այդ մասին պետք է ազնվորեն և անկեղծորեն իրազեկ պահել, ինչպես նաև այն կուսակցության անդամներին, որոնք ընդունվել են ԽՄԿԿ-ի մեջ և իրենց կոմունիստ են համարում:

## III.

Կկամենայի անդրադառնալ ևս մի գործոնի, որն այսօր կանխորոշում է Լիտվայի, և ոչ միայն նրա, որոշ ուժերի վարքագիծը: Վերջին ժամանակներս մենք մեկ անգամ չէ, որ բախվում էինք այդպիսի հանգամանքների, որոնք ավանդական

Մենք իրավական հիմք ենք ստեղծում ֆեդերացիայի շենքի համար: Նման հիմքի ստեղծմանն է կոչված նպաստել կենսականորեն կարևոր օրինագծերի այն ծրարը, որը, ինչպես հույս ունենք, եկող տարվա սկզբներին կընդունվի ԽՍՀՄ Գերագույն խորհրդի կողմից: Բայց որպեսզի շենքն ամուր լինի, այն պետք է համապատասխանի նախագծին, կառուցվի առանց նախատեսված տեխնիկական նորմատիվներից նահանջելու:

Այս առնչությամբ (և սա նույնպես Լիտվայի կուսկազմակերպության վիճակից քաղված դաս է) պետք է հստակորեն գծել այն սահմանները, որից չի կարելի դուրս գալ, քանի որ դրանցից դուրս գալը նշանակում է ֆեդերացիայի կառուցման ջանքերի վաղօրոք ծրագրված տապալում: Եթե ուզում եք, ամբողջությամբ վերցրած վերակառուցման տապալում:

Նման սահմաններից մեկը ԽՄԿԿ-ի միասնական կառուցվածքից հրաժարվելու անհնարինությունն է: Հակառակ դեպքում մեր կուսակցությունը կվերածվեր անձև ֆեդերալիստական ակումբի, բաղկացած լինելով առանձին ինքնուրույն կուսակցական խմբերից: Մի՞թե պարզ չէ, որ այն դեպքում, երբ մենք անցնենք այդ սահմանը, ապա, կարելի է ասել, գիտակցաբար գործը կտանենք դեպի ԽՍՀՄ-ի անդամահատում, իսկ դա պատմական փակուղի է Խորհրդային Միության բոլոր ժողովուրդների համար:

## IV

Ի՞նչ դասեր է հարկավոր քաղել Լիտվայի կոմկուսի համագումարի որոշումներից: Իհարկե, դա ահազանգ է, որը վկայում է, որ հարկավոր է արագացնել վերակառուցման պրոցեսները նաև ներկուսակցական կյանքի ասպարեզում: Այդ դասի գլխավոր իմաստն այն է, որ մենք այլևս չենք կարող մեզ թույլ տալ հետ մնալու իրադարձությունների և վերափոխումների տեմպից, որոնց նախաձեռնողն ինքը կուսակցությունը եղավ:

Եվ բոլորն, ընկերներ, պետք է հասկանան մի շատ կարևոր բան, այսինքն այն, որ մեր բոլոր պրոբլեմների լուծումն առջևում է և ոչ թե հետևում, որ շարժումն արգելակելու ամեն մի փորձ, որի հետևում նկատվում է հետ, դեպի նախկին կարգերը վերադառնալու ցնորական հույսը, ոչ միայն հակարդյունավետ է, այլև պարզապես անիրական: Մենք վերադառնալու տեղ չունենք: Երկիրը վերակառուցման տարիներին պոկվել է տեղից և շատ առաջ անցել: Նրան նախկին ժամանակներին վերադարձնելու յուրաքանչյուր փորձ կորուստների է վերածվում կուսակցության համար՝ վարկի, հեղինակության կորստի և, հետևաբար, ժամանակակից քաղաքական կյանքի վրա ներգործելու և, առավել ևս, նրանում ավանգարդային դեր խաղալու ընդունակության կորստի:

Կուսակցությունն ի վիճակի է գլխավորել ժողովրդի սոցիալական ստեղծագործությունը, որը դեռ մեծապես ենթարկված է պատմական տարերքի, քաղաքական հույզերի ազդեցություններին, որոնք երբեմն դուրս են գալիս առավելագույն թույլատրելի դեմոկրատական կանոնների ափերից: Բայց հենց դրա համար էլ մասսաների ստեղծագործությունը քաղաքական ավանգարդի ուղղություն տվող ջանքերի կարիք ունի: Քաղաքական ավանգարդի դերը ծանր, բայց անհրաժեշտ ու պատասխանատու աշխատանք է: Պատմությունը երբեք և ոչ ոքի ոչ անփոփոխ քաղաքական առաջնության, ոչ բացարձակ անսխալականության մանդատ չի տալիս: Ամեն անգամ այդ իրավունքը հարկավոր է ապացուցել ժողովրդի կարիքների ու շահերի իմացությամբ, իրատեսական քաղաքական լեզվով դրանք ձևակերպելու, խելամիտ գործողությունների վերածելու կարողությամբ:

Լինել քաղաքական ավանգարդ, նշանակում է սուբյեկտիվորեն ցանկալիի և օբյեկտիվորեն հնարավորի բարդ զուգակցության մեջ, տարբեր սոցիալական խավերի ու խմբերի տրամադրվածություններում, մասսայական ճակատների, հասարակական կազմակերպությունների, միությունների և այլ խմբակցությունների գործունեության օբյեկտիվ ուղղվածության ասպարեզում կողմնորոշվելու կարողությունը ավտորիտար բյուրոկրատական խմբով չնենգափոխել: Ժողովրդական ներկայացուցչության գործուն, դեմոկրատական իրավունքի ձեռքբերման ճանապարհին կուսակցությունը պետք է հաղթահարի քաղաքական պասիվության, կեղծ հեղափոխական ակտիվամոլության ներկուսակցական արգելքները, քաղաքական-բյուրոկրատական անկուլտուրականության, անջատական տրամադրությունների, պահպանողականության վերապրուկները: Հարկավոր է ինքն իրեն հաշիվ տալ, որ կուսակցությունը, ինչպես և հասարակությունը դեռ կանգնած է նորացման ակունքների մոտ, կրում է վարչահրամայական շատ արատների բեռը, բայց նա կարողացել է պահպանել հիմնական համանշանակ սոցիալիստական արժեքները: Եվ դա նրա նորացման հաջողության գրավականն է:

Չի կարելի դեկրետով որոշել կուսակցության դերը ավանգարդում, հասարակական նորացման սուր ծայրին: Այն պետք է լինի (ինչը միայն կարող է լինել) բուն կուսակցության մեջ դեմոկրատական խոր վերափոխումների հետևանք, կուսակցական կյանքի լենինյան նորմերի վերածննման արդյունք՝ սոցիալ-քաղաքական նոր պայմաններում: Ամեն մի թերացում, ամեն մի փորձ խույս տալու իրադարձություններին արձագանքելուց, այն բանից, որ դրանց ժամանակին քաղաքական գնահատական տրվի իբրև գլխավորը, առաջարկի սեփական սոցիալիստական հեռանկարը, հանգեցնում են, ինչպես լիտվական իրավիճակի դեպքում, քաղաքական նախաձեռնության կորստյան, վերակառուցման հակառակորդներին օգնում կուսակցությունը պատկերացնել որպես պահպանողական, վերափոխումներին դիմադրող ուժ:

Մենք բուն կուսակցության վճռական դեմոկրատական ներքին փոխանակության ուղին, XXVIII համագումարի նախապատրաստության ուղին ենք բռնել, որից ԽՄԿԿ-ն պետք է դուրս գա որպես համախոհների դեմոկրատական ու համախմբված նորոգ միություն: Միայն դինամիկ ու համարձակ, թե ինքն իրեն, թե շրջակա աշխարհը սթափ գնահատող կուսակցությունը կարող է դառնալ հասարակության ցեմենտող ուժ և վերակառուցման հոգի: Կուսակցություն, որն իր գործունեության իմաստը համարում է ոչ թե ինքն իրեն սպասարկելը, այլ իր ժողովրդին ծառայելը, որը կպահպանի ու կամրապնդի իր շարքերի միասնությունը հանուն այն իրական գործնական արդյունքների նվաճման, որ նրանից ակնկալում են իր անդամները, մեր ամբողջ հսկայական բազմազգ երկրի աշխատավորները:

Այդ պրոցեսը վերակառուցման կարևորագույն բաղկացուցիչ մասերից մեկն է: Այստեղ ես կցանկանայի ասել, որ մենք թերագնահատում ենք վերակառուցման շնորհիվ արդեն կատարվածը: Այո, երկրի վիճակը դեռ բավական ծանր է: Այո, վերակառուցումը դեռ շոշափելի արդյունքներ չի տվել մի ամբողջ շարք հրատապ կենսական հարցերում: Բայց այն, ինչ նա արդեն տվել է՝ ինքնարտահայտման, ստեղծագործության, նախաձեռնության ազատությունը, այդ թվում նաև քաղաքական ոլորտում, մի՞թե դա քիչ է: Մի՞թե հենց վերջերս մենք շնչահեղձ չէինք լինում լճացման մթնոլորտի հեղձուկից, մտքի ու գործի կաթվածից, չէինք երազում ամենանվիրականի՝ մի կում ազատության մասին:

Իհարկե, ազատությունը անարխիստական ինքնակամություն և ամենաթողություն չէ, որը ոտնահարում է հասարակական բոլոր կանոնները: Այն խիստ անհրաժեշտ է որպես հասարակության և անհատի հոգեվիճակ, այն մեզ պետք է նաև թե որպես ավելի ստեղծարար աշխատանքի խթան, թե որպես ձեռներեցության, նախաձեռնության բաղադրատարր, թե որպես կարգապահության հիմք, ուրեմն և որպես վերակառուցման ճանապարհին մեծ արդյունքների ու փոփոխությունների նախակարապետ: Եվ այս տեսակետից, իմ կարծիքով, մենք իրավունք չունենք չտեսնելու քաղաքական և տնտեսական ռեֆորմների, գաղափարախոսության նորացման բարձր, հեռանկարային նշանակությունը:

Մենք սկսել ենք վերափոխումների, բարոյական մաքրման և բարոյական վերածնության մեծ գործը: Եվ ահա հոգեբանական լուրջ տարօրինակություններից մեկը. հսկայական շրջադարձ կատարելով հասարակական գիտակցության մեջ, տեղից շարժելով իներցիայի թափանիվը, հիմա սկսում ենք ինքներս վախենալ, միմյանց և հասարակությանը վախեցնել անխուսափելի ուղեկից բարդություններով, որոնք ծառանում են վերակառուցման մեծ ճանապարհին:

Այժմ չեմ ուզում խորանալ այս թեմայի մեջ. մենք պետք է մեծ և հանգամանալի խոսակցություն ծավալենք կուսակցության առաջիկա համագումարում, իսկ ամենամոտ ժամանակներս, ինչպես մենք պայմանավորվել ենք, Կենտկոմի հունվարյան պլենումում նախահամագումարյան դիսկուսիայի համար քաղաքական

պլատֆորմի նախագիծը քննարկելիս: Ես այսօր այն շրջափակցի, որովհետև առանձին կուսակցական կոմիտեների նման խմբակային տրամադրվածությունը ծնում է այն մոլորությունը, ինչը Լիտվայի ղեկավարներին հասցրեց ներկա վիճակին: Դա նույնպես առկա է, և դա ևս մեկ դաս է, հասցեագրված ոչ միայն Լիտվայի կոմունիստներին, այլև մեզ բոլորիս:

Մենք հավատում ենք, որ Խորհրդային Միության միլիոնավոր աշխատավորներ, կոմունիստներ ու անկուսակցականներ ըստ արժանվույն են գնահատում մեր կուսակցության նախաձեռնող դերն ու ավանդը խորհրդային հասարակության մեջ տեղի ունեցող պատմական տեղաշարժերում, նրան դինամիզմ, ստեղծագործական նախաձեռնություն, միջազգային հեղինակություն վերադարձնելու գործում: Մենք հավատում ենք վերակառուցման գաղափարների միավորող ուժին, որն ընդունակ է միասնական ամբողջության մեջ արդյունավետորեն և հուսալիորեն միավորել տարբեր ազգությունների խորհրդային կոմունիստների եռանդն ու ջանքերը և դրանով իսկ ամրապնդել մեր ազատ կամավոր Միությունը առողջ ու ամրակուռ հիմքի վրա, մեր բոլոր ժողովուրդների փոխադարձ վստահության վրա:

Եվ այդ պատմական հեղափոխական պրոցեսում անփոխարինելի է ԽՄԿԿ-ի դերը:

Վերակառուցման ճակատագիրը կախված է ԽՄԿԿ-ի միասնությունից: (**Ծափահարություններ**):

---

# ԼԻՏՎԱՅԻ ԿՈՄԿՈՒՍԻ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՀԵՏ ԿԱՊՎԱԾ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԽՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՊԼԵՆՈՒՄԻ 1989 ԹՎԱԿԱՆԻ ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 26-Ի ՈՐՈՇՈՒՄԸ

1. Լիովին հավանություն տալ պլենումում ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի զեկուցման բովանդակած գնահատականներին ու հետևություններին:

ԽՄԿԿ Կենտկոմի պլենումը վստահություն է հայտնում, որ հանրապետության կոմունիստները, աշխատավորները ըմբռնումով կընկալեն ԽՄԿԿ Կենտկոմի մտահոգությունը Լիտվայի կոմկուսում ստեղծված կացության առթիվ:

2. Պլենումը անհրաժեշտ է համարում Մ. Ս. Գորբաչովի զեկուցման գնահատականներն ու հետևությունները իրազեկ դարձնել ԽՄԿԿ բոլոր անդամներին, երկրի աշխատավորների լայն զանգվածներին: Պլենումի նյութերի հետ կապված քաղաքական աշխատանքին մասնակից դարձնել ԽՄԿԿ Կենտկոմի անդամներին ու անդամության թեկնածուներին, ԽՄԿԿ Կենտրոնական վերստուգիչ հանձնաժողովի անդամներին, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմների, կուսակցության երկրկոմների, մարզկոմների առաջին քարտուղարներին, ամբողջ կուսակցական ակտիվին:

3. Անհրաժեշտ համարել պլենումի մի խումբ մասնակիցների՝ քաղբյուրոյի անդամների ու անդամության թեկնածուների, ԽՄԿԿ Կենտկոմի քարտուղարների, ԽՄԿԿ Կենտկոմի անդամների ու անդամության թեկնածուների մեկնումը Լիտվա՝ հանրապետության կոմունիստների, կուսակցական կազմակերպությունների, հանրապետության աշխատավորական կոլեկտիվների հետ հանդիպումներ անցկացնելու համար:

Պլենումը նաև նպատակահարմար է համարում ԽՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Ս. Գորբաչովի ուղևորությունը Լիտվա:

4. Այդ աշխատանքի անցկացումից հետո վերսկսել ԽՄԿԿ Կենտկոմի պլենումի նիստը և ընդունել համապատասխան որոշումներ:

## Հայկական ԽՍՀ-ից ընտրված ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների

# ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

Ինչպես հայտնի է, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարը ԽՍՀՄ Գերագույն խորհրդի Ազգությունների խորհրդի ազգային քաղաքականության և ազգամիջյան հարաբերությունների հանձնաժողովին հանձնարարել էր քննության առնել ԼՂԻՄ-ում տիրող վիճակը և արդյունքների մասին զեկուցել ԽՍՀՄ Գերագույն խորհրդին: Սակայն ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի նիստում հանձնաժողովի եզրակացության փոխարեն ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության անունից ներկայացվեց «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում իրադրությունը նորմալացնելու միջոցառումների մասին» որոշման նախագիծը: Այդ նախագիծը նախագահությունում չէր քննարկվել: Ավելին, Գերագույն խորհրդի անդամներին դրան նախապես չէին ծանոթացրել: Դեպուտատների համար այն ընթերցվեց միայն քննարկման օրը: Չլսվեց նաև հանձնաժողովի կարծիքը:

Լիովին անտեսվեց նաև Հայկական ԽՍՀ-ից և ԼՂԻՄ-ից ընտրված ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների այն առաջարկը, որ հարցի քննարկումը հետաձգվի այն բազմակողմանիորեն նախապատրաստելու հետագա քննարկման համար: Ուստի Հայկական ԽՍՀ-ից և ԼՂԻՄ-ից ընտրված ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատները ստիպված եղան հեռանալ նիստերի դահլիճից:

Պառլամենտական դեմոկրատական աշխատակարգի խախտումը հանգեցրեց հապճեպ, ոչ համապատասխան լուծման, որը բարի մտադրություններին հակառակ, էլ ավելի սրեց իրադրությունը ռեգիոնում:

Լեռնային Ղարաբաղի պրոբլեմը ամենից առաջ նրա հիմնական բնակչության ինքնորոշման, իր բախտը ինքնուրույնաբար տնօրինելու ամեն մի ժողովրդի հանրահանաչ իրավունքի ապահովման հարց է: Իսկ որոշումը, ըստ էության, ի չիք դարձրեց պրոբլեմի լուծման նույնիսկ այնքան դժվարությամբ գտնված փոխզիջումային մոդելը:

Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի հատուկ կառավարման կոմիտեի կարգավիճակի ամրապնդման փոխարեն որոշումը նախատեսում է դրա վերացում և փոխարինում մի այնպիսի մարմնով, որը պետք է ժամանակավորապես իրականացնի սոսկ դիտորդական վերահսկիչ ֆունկցիաներ: Մարզի բնակչության ճնշող մեծամասնության՝ հայ բնակչության կյանքի և անվտանգության ռեալ պետական երաշխիքների, նրա նորմալ ազգային զարգացման իրավունքի հաստատման փոխարեն ԼՂԻՄ-ը բռնի կերպով նորից դրվում է Ադրբեջանի իշխանության տակ:

Նվս մի հանգամանք. ԽՍՀՄ Գերագույն խորհրդի որոշումը ընդունվեց Ադրբեջանական ԽՍՀ-ի սահմանադրական օրենքի հրապարակումից անմիջապես հետո, որը Լեռնային Ղարաբաղի ինքնավարությունը ոչնչացնելու բացահայտ նպատակ է հետապնդում: Որոշումն ընդունվեց արդեն ավելի քան մեկուկես տարի շարունակվող ԼՂԻՄ-ի շրջափակման պայմաններում, երբ ավերիչ երկրաշարժից հետո պարբերաբար շրջափակման էր ենթարկվում նաև Հայաստանը:



Մենք ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 1989 թվականի նոյեմբերի 28-ի որոշումը գնահատում ենք որպես կենտրոնի կապիտուլյացիա Ադրբեջանի ժողովրդական ճակատի ծայրահեղականների առջև: ԽՍՀՄ Գերագույն խորհուրդը սահմանափակվեց ի գիտություն ընդունելով Ադրբեջանական ԽՍՀ-ի ղեկավարության այն հավաստիացումները, թե ինքը բոլոր միջոցները կձեռնարկի Հայաստանի ու ԼՂԻՄ-ի շրջափակումը վերացնելու և այսուհետև շրջափակում թույլ չտալու համար:

Շրջափակումը շարունակվում է նաև այսօր: Ուրեմն ԼՂԻՄ-ի հայ բնակչությունը, ամբողջ հայ ժողովուրդը կարո՞ղ են արդյոք այնքան միամիտ լինել ու հավատալ, որ Ադրբեջանի իշխանությունները կցանկանան և ի վիճակի կլինեն ապահովել մարզի ռեալ ինքնուրույնությունը նրա իրավունքների 70 տարվա ոտնահարումից հետո:

Մենք դիմում ենք ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարին ու ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահ Մ. Ս. Գորբաչովին և կարծում ենք, որ համագումարը ազդու միջոցներ կձեռնարկի այսուհետև թույլ չտալու պառլամենտական ընթացակարգի խախտումներ ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նիստերում:

Մենք, Հայկական ԽՍՀ-ից ընտրված ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներս, պատրաստ ենք ակտիվորեն մասնակցել ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարի աշխատանքին, երկրի ու մեր հանրապետության համար բախտորոշ որոշումների քննարկմանը և, արտահայտելով մեր ընտրողների շահերը, հասնել ԼՂԻՄ-ի պրոբլեմի արդար լուծման:

Մենք հավատում ենք արդարությանը, հավատում ենք վերակառուցմանը:

Հայկական ԽՍՀ-ից ընտրված ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատները պնդում են, որ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարի օրակարգում դրվի հետևյալ հարցը. «ԽՍՀՄ Գերագույն խորհրդի նախագահության պարզաբանումը ԼՂԻՄ-ի բնակչության ճնշող մեծամասնության ինքնորոշման իրավունքի ոտնահարման և հայ ժողովրդի արժանապատվության շարունակական ոտնահարման կապակցությամբ»:

*Հայտարարության տեքստն ընդունվել է Հայկական ԽՍՀ-ի դեպուտատական խմբի նիստում 1989 թվականի դեկտեմբերի 8-ին*

## ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ս. Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ ելույթը ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների երկրորդ համագումարում 1989 թվականի դեկտեմբերի 15-ին

Հարգելի ընկեր դեպուտատներ:

Երկրի, վերակառուցման ճակատագրի համար ոչ դյուրին, բարդ, ըստ էության դրամատիկ ժամանակներում է գումարվել մեր համագումարը: Ժողովուրդը վաղուց է սպասում այնպիսի որոշումների, որոնք ի վերջո թույլ կտան լուծել ծայրաստիճան սրված սոցիալ-տնտեսական, ազգամիջյան պրոբլեմների, որպես այդ ֆոնի հիմքի վրա՝ սոցիալիզմի նորացման վճռորոշ պրոբլեմների բարդ հանգույցը:

Ի՞նչ ուղիով կգնանք մենք: Երկրի զարգացման ո՞ր տարբերակի օգտին կքվեարկենք: Նորացմանը ինչպիսի՞ տեմպ կտա մեր համագումարը: Դրանից կախված կլինի նրա հաջողությունը: Այն հաջողությունը, որի օգտին մեզ առաջարկեց քվեարկել Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը մեր համատեղ աշխատանքի առաջին օրը:

Իհարկե, այդ աշխատանքում գլխավորը սոցիալ-տնտեսական վերափոխումների կուռ համակարգի մշակումն է, ծանր ճգնաժամի ճիրաններից էկոնոմիկայի դուրսբերումը: Ինչու՞ է սա գլխավորը: Որովհետև այն բանից, թե մեր գործերն ինչպես կընթանան էկոնոմիկայում, կախված կլինի քաղաքականության, սոցիալական ոլորտի, յուրաքանչյուր մարդու կյանքի հաջողությունը:

Եվ, ըստ իս, հարկավոր է այս դիրքերից նախ և առաջ գնահատել համագումարին կառավարության ներկայացրած զեկուցումը:

Այո, երկրի կառավարության առջև ծառացած էր անչափ դժվար խնդիր. մշակել նոր մոտեցումների ու միջոցառումների համալիր, որոնք մի կողմից կապահովեին ժողովրդի կենսապայմանների շոշափելի բարելավում, իսկ մյուս կողմից այդ բարելավման համար ամուր տնտեսական հիմք կստեղծեին, թույլ կտային կանգնեցնել ճգնաժամային երևույթների ու պրոցեսների զարգացումը, կայունացնել սպառողական շուկան, դրամաշրջանառությունը, կասեցնել բյուջետային դեֆիցիտի ուռճացումը: Կառավարական ծրագիրը համապատասխանու՞մ է արդյոք այս կենսական պահանջներին: Սկզբունքային առումով՝ այո: Նախ և առաջ ես այստեղ կառանձնացնեի այսօրվա համար կարևոր այնպիսի դրական մոտեցումներ:

Դա ժողովրդական տնտեսության առջև ծառացած հրատապ խնդիրների լուծման նպատակով առաջարկվող միջոցառումների իրատեսությունն է ու հիմնավորվածությունը:

Դա հստակ ու միանշանակ կողմնորոշումն է դեպի սոցիալական գերակայությունները:

Դա, վերջապես, վճռական քայլն է դեպի սոցիալիստական շուկայի ձևավորումն ու զարգացումը, էկոնոմիկայի ցանկալի նկարագրի ձևավորումը, որը խարսխված կլինի սեփականության նորացված հարաբերությունների վրա: Մի խոսքով, Ն. Ի. Ռիժկովի ներկայացրած ծրագիրը, չնայած այստեղ աջից ու ձախից հընչած քննադատությանը, ըստ էության վերակառուցմանը նոր շնչառություն է տալիս էկոնոմիկայում, պաշտպանում արմատական տնտեսական ռեֆորմը, տալիս է լճացման ու ճգնաժամի ճահճից ժողովրդական տնտեսությունը դուրս բերելու բանալին:

Բայց դրա հետ միաժամանակ, անկարելի է չտեսնել, որ ծրագրում մինչև վերջ չի մշակված երկրի հեռանկարային սոցիալ-տնտեսական զարգացման տակտիկական ու ստրատեգիական նպատակների իրականացման պարզ ու հստակ մեխանիզմը: Իմ կարծիքով չկա նաև այն դժվարությունների համակողմանի, ծավալային ընկալումը, որոնք մեզ սպասում են նոր, ինքնակարգավորվող սոցիալիստական էկոնոմիկայի ճանապարհին:

Կոնցեպցիայում նկատելի է նոր տնտեսական հարաբերությունների վճռական տարրերի ձևավորման տարաժամանակյա բնույթը: Համենայն դեպս այն տպավորությունն է ստեղծվում, որ գների ռեֆորմի իրականացման, արտադրության միջոցների շուկայի ձևավորման, միութենական հանրապետությունների տարածքների և ձեռնարկությունների մակարդակով ակտիվ արտաքին տնտեսական գործունեության իրավական ու տնտեսական երաշխիքների ստեղծման գործողությունների կարգի ժամկետները համաձայնեցված չեն: Իսկ չէ որ էկոնոմիկայում վերակառուցման արդեն կուտակված փորձը ցույց է տալիս, որ այդ աշխատանքում կոմպլեքսայնության, ներդաշնակության, սիստեմայնության բացակայությունը այն դարձնում է սակավ արդյունավետ: Եվ ավելին, հղի է էկոնոմիկայի նոր մոդելի բուն գաղափարի վարկաբեկման սպառնալիքով:

Մյուս լուրջ պրոբլեմը արմատական տնտեսական ռեֆորմի խորացման սոցիալական հետևանքներն են, սոցիալական գինը: Այստեղ դեռ շատ բան անորոշ է և անմշակ: Օրինակ, ինչպե՞ս են կառուցվելու հասարակական հարաբերությունները սոցիալական արդարության չափանիշների, սոցիալական հավասարության չափանիշների վերաիմաստավորման պայմաններում: Ինչպե՞ս հաղթահարել պահպանողականության, քարացածության, հավասարարական տրամադրությունների, ժողովրդային տարերքի, խնամառուականության, խմբային եսամոլության դեռևս վիթխարի կուտակումները: Իսկ չէ որ դա իրողություն է և այն հարկավոր է հաշվի առնել:

Լավ հայտնի է, որ սոցիալիստական այն երկրները, որոնք մեզանից առաջ են անցել շուկայական հարաբերությունների ճանապարհին, արդեն մեծ դժվարություններ են ապրում պլանային և շուկայական սկզբունքների փոխհամաձայնեցված չլինելու պատճառով: Այստեղ ստեղծվել են հասարակական մեծ լարվածության, քաղաքական համաղետների աղբյուրներ: Եվ մենք պետք է ուշի-ուշով հետևենք նրանց փորձին, որպեսզի նույն սխալները չգործենք:

Հասկանալի է, որ անմիջապես, միանգամից մեզ հազիվ թե հաջողվի ստեղծել հասարակական հարբերությունների դեմոկրատական կառավարման ներդաշնակ մեխանիզմներ, որոնք թույլ տան համեմատաբար դյուրությամբ վերացնել ծագող պրոբլեմներն ու հակասությունները: Եվ այս պայմաններում մենք պետք է պատրաստ լինենք այն բանին, որ կարող են ծագել այնպիսի իրավիճակներ, երբ այս կամ այն փոփոխության բացասական հետևանքները գերազանցում են դրական տեղաշարժերը, ստեղծում սոցիալական լարվածության անբարենպաստ ֆոն, ինչպես որ դա եղավ, օրինակ, կոոպերատիվների դեպքում: Եվ այստեղ հրամայաբար անհրաժեշտ է մշակել անհատի սոցիալական պաշտպանվածության խորապես կշռադատված միջոցառումներ:

Արմատական ռեֆորմի գաղափարախոսությունը աներևակայելի է առանց մեր տնտեսական համակարգի ներփակվածության հաղթահարման, առանց համաշխարհային էկոնոմիկային ինտեգրացվելու պրոցեսի արագացման: Ընդ որում դա վերաբերում է ոչ միայն ամբողջ երկրի ժողովրդական տնտեսությանը, այլև յուրաքանչյուր միութենական հանրապետության էկոնոմիկային:

Տնտեսավարման բաց համակարգին անցնելու համար անհրաժեշտ պայմանների ու երաշխիքների ստեղծումը օբյեկտիվ անհրաժեշտություն է: Իսկ մեր հանրապետության համար դա ոչ թե սոսկ անհրաժեշտություն է, այլ հրատապ, կենսական պահանջ: Ահա թե ինչու մենք այդպիսի հաստատակամությամբ ենք դնում ազատ ձեռնարկչության սկզբունքներ արմատավորելու, օտարերկրյա երկարատև կապիտալ ներդրումների ներգրավման համար առավել բարենպաստ պայմաններ ստեղծելու հարցը:

Սակայն այսօր դարձյալ մեծ դժվարություններ են մնում համատեղ ձեռնարկությունների ստեղծման, վալյուտային ռեսուրսների գոյացման և օգտագործման ա-

պարեզում: Դանդաղ են վերակառուցվում կազմակերպական կառուցվածքները, արտաքին տնտեսական գործունեության բազմաթիվ հաստատություններ: Այդ բնագավառում չի ստեղծված կադրերի պատրաստման ու վերապատրաստման հստակ համակարգ: Զգացվում է կազմակերպական-իրավական և դիվանագիտական ապահովման նոր մեխանիզմների մշակումը, որոնք կհամապատասխանեին արտաքին տնտեսական կապերի ռեֆորմի պահանջներին: Դժվար է գտնել դրա բացատրությունը: Չէ որ այս առումով ընդունվել են հարկ եղածից ավելի քաղաքական որոշումներ: Իսկ ինչու՞ դրանք չեն կատարվում:

Ինչու՞ Հայաստանում ազատ ձեռնարկչության գոտի ստեղծելու հասունացած հարցը այդպես էլ մնում է հարց: Ժամանակն է վերջապես գտնելու դրա վերջնական լուծումը: Դրան սպասում են հանրապետությունում և հատկապես տարերային աղետի գոտում:

Ինձ արդեն քանիցս վիճակվել է խոսել Հայաստանի չափազանց բարդ իրավիճակի մասին: Այստեղ միահյուսվել են անչափ լուրջ տնտեսական դժվարությունները, սոցիալական և ազգային սուր դժգոհությունը, տարերային աղետի ողբերգական հետևանքները, 220 հազար գաղթականների տեղավորման դժվար լուծելի պրոբլեմները: Ես արդեն չեմ խոսում մշտական շրջափակման մասին, որը դարձել է ուժային ճնշման գործոն և խարխլում է հանրապետության ոչ միայն տնտեսական հիմքերը:

Ծայրահեղ պայմանները պահանջում են ծայրահեղ միջոցներ: Ուստի հանրապետության էկոնոմիկայի առողջացմամբ զբաղվելուց առաջ մենք ստիպված ենք լինում այն վերակենդանացնել, ոտքի կանգնեցնել:

Մեկ տարի է անցել այն ժամանակվանից, երբ աղետը պատուհասեց Հայաստանի հողը: Երկրաշարժին առնչվող սոցիալական լարվածությունը առայժմ չի թուլանում, ծագում են նորանոր պրոբլեմներ: Դա միայն կազմակերպական անկանոնությունների հետևանքը չէ: Անդրադարձել են նաև երկրաշարժի հետևանքների վերացման ստրատեգիայի որոշման անճշտությունները, հետտարերային իրավիճակի անբավարար վերլուծությունը, արտասահմանյան փորձի անբավարար հաշվառումը, երկրում արտակարգ իրավիճակների կառավարման տնտեսական մեխանիզմի բացակայությունը:

Այսօր մենք հայտնվել ենք այնպիսի վիճակում, երբ աղետյալ գոտում բնակարանների և սոցիալական ոլորտի մյուս օբյեկտների շինարարության տարեկան առաջադրանքը կատարված է ընդամենը 10 տոկոսով: Հարյուր հազարավոր մարդիկ տակավին զրկված են օթևանից և արդեն երկրորդ ձմեռն են անցկացնում անչափ ծանր պայմաններում: Մենք լավ ենք հասկանում, թե երկրի էկոնոմիկայի վրա ինչպես են անդրադառնում երկրաշարժի հետևանքները: Եվ, իհարկե, մեր պարտքն ենք համարում առավելագույնս գործի դնել մեր ներքին հնարավորությունները: Դրա համար հանրապետությունում պետք է դեռ շատ բան արվի:

Երկրաշարժի հետևանքների վերացման դառը փորձը մեկ անգամ ևս հաստատեց. տնտեսական զարգացման մոդելը պետք է սուվերեն հանրապետությունների տնտեսական ինքնուրույնությունը ճկուն կերպով զուգորդի սկզբունքային այն դրույթների հետ, որոնք սահմանում են ԽՍՀՄ-ի՝ որպես միասնական բազմազգ պետության ամբողջականությունը:

Հայաստանի երկրաշարժը և Չեռնոբիլի ողբերգությունը համոզում են նաև, որ երկրում անհրաժեշտ է ունենալ այս կամ այն ռեգիոնում ծագող արտակարգ իրավիճակների հաղթահարման միասնական համապետական համակարգ: Ներկայումս քայլեր են ձեռնարկվում այդ նպատակով: Սակայն ծայրահեղ իրավիճակներում ձեռնարկվելիք գործողությունների ամբողջական համակարգը տակավին ձևավորված չէ:

Գաղտնիք չէ, որ մեր երկրում տնտեսավարման վերակառուցումը բախվել է չնախատեսված արտաքին տնտեսական հանգամանքների, կազմալուծիչ գործոնների: Այստեղ կան թե գործադուլներ, թե աշխատանքային կարգապահության խախտումներ, թե անտնտեսվարության լայն տարածում և թե իրավախախտումների աճ: Ես արդեն չեմ խոսում այնպիսի աննախադեպ երևույթների մասին, ինչպիսիք են տնտեսական շրջափակումը, երկաթուղիների և ավտոճանապարհների շրջափակումը:

Ես դիմում եմ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներին: Շրջափակումը այն ձեռնարկումը չէ, որը կարելի է անտեսել: Մենք մեր հանրապետությունում դրա



հետևանքները զգում ենք ամեն օր, ամեն ժամ: Եվ մեզ համար դժվար, ասենք նաև անհնար է մարդկանց բացատրել, թե ինչպես կարող է իրեն հարգող պետությունը հանդուրժել նման վիճակ: Մենք գործ ունենք ոչ թե սոսկ տնտեսական, այլ ըստ էության քաղաքական լուրջ սաբոտաժի հետ:

Գտնում ենք, որ ժողովրդական դեպուտատների համագումարը պետք է այդ կարգի ձեռնարկումները դատապարտի որպես խորհրդային ֆեդերացիայի սկզբունքների հետ անհամատեղելի գործողություններ: Երկրի պետական իշխանության մարմինները պետք է տնտեսական խիստ պատժամիջոցներ կիրառեն Միության հանդեպ իրենց պարտավորությունները խախտող հանրապետությունների նկատմամբ, որոնք պետք է փոխհատուցեն պատճառած ամբողջ վնասը: Բավական է ասել, որ Հայաստանի նկատմամբ ձեռնարկված այդ ապօրինի քայլի ընդհանուր ժողովրդատնտեսական վնասը կազմում է ավելի քան մեկուկես միլիարդ ռուբլի: Իսկ կարելի՞ է արդյոք չափել բարոյական վնասը:

Այսօր ավելի քան երբևէ այժմեական է էկոնոմիկայի և քաղաքականության դիալեկտիկական փոխադարձ կապը: Առանց քաղաքական կայունացման, առանց ազգամիջյան սուր կոնֆլիկտների հաղթահարման դժվար է իրականացնել նախատեսվող տնտեսական վերափոխումները:

Ցավոք, մեր ռեգիոնում իրադրությունը մնում է ծայրաստիճան լարված ու պայթյունավտանգ: Այս տարվա նոյեմբերի 28-ին ԽՍՀՄ Գերագույն խորհրդի «Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզում իրադրությունը նորմալացնելու միջոցառումների մասին» որոշման ընդունումից հետո այն էլ ավելի սրվեց: Միխայիլ Սերգեևիչ Գորբաչովը համագումարում արդեն նշել է, որ այդ որոշումը չի ընդունել կողմերից ոչ մեկը: Մեր հանրապետության Գերագույն խորհուրդը ընդունված որոշումը միաձայն համարեց ստեղծված իրադրությանը անհամապատասխան, ուստի և անընդունելի:

Մեզ ճիշտ հասկացեք, մենք փնտրում ենք ճշմարտություն, արդարություն և ոչ թե հակառակորդներ: Ես հասկանում եմ, որ շատերը հոգնել են այս պրոբլեմից, բայց դրա հետևում կանգնած են մարդիկ, մարդկային ճակատագրեր, կանգնած է ժողովուրդ: Եվ որքան էլ դա դժվար լինի, այն հարկավոր է հանգիստ պայմաններում համակողմանիորեն քննության առնել և գտնել կոնֆլիկտի կարգավորման, իրադրության նորմալացման բանալին:

Շնորհակալություն ուշադրության համար:

---

# ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐԻ ԾՐԱԳԻՐ

**Մ. ՄԿՐՏՉՅԱՆ**

1990 ԹՎԱԿԱՆԸ և ապա՝ տասներեքերորդ հնգամյակը պետք է դառնան էկոնոմիկայի առողջացման, ժողովրդական տնտեսության համակշռված և համամասնական գործունեության ժամանակաշրջան, ապահովելով վերարտադրության առաջընթաց ընդլայնումը էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշման հարաճուն տեմպերի պայմաններում: Սրանք այս տարվա պլանի ձևավորման ելակետային բնորոշ կողմերն են, պլան, որը կլինի մեր երկարաժամկետ սոցիալ-տնտեսական քաղաքականության օրգանական սկզբնամասը:

Պլանի մյուս կարևորագույն ելակետը ստեղծված ծանր տնտեսական իրավիճակի ակտիվ փոփոխման խնդիրն է: Պլանը կոչված է հաղթահարելու առկա բացասական միտումները, կայունացնելու էկոնոմիկան, ուժեղացնելու դրա սոցիալական ուղղվածությունը և զարկ տալու էկոնոմիկայի ֆինանսական առողջացմանը: Այն պետք է բավարարի աշխատավորների անհետաձգելի պահանջմունքները, կայունացնի ներքին շուկան: Վերջապես, երրորդ խոշոր խնդիրը բխում է հաջորդ հնգամյակի բազային տարվա ունեցած տեղից, հաշվի առնելով ընթացիկ պրոբլեմների ողջ սրությունն ու բարդությունը: Հենց ընթացիկ տարին պետք է նախապատրաստի նյութատեխնիկական և օրենսդրական-տնտեսագիտական նախադրյալներ, հաջորդ հնգամյակում ժողովրդական տնտեսության առաջընթաց զարգացման համար:

Գլխավոր պրոբլեմները, որոնք կանխորոշել են պլանի ձևավորման մոտեցումները, բխում են ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան և 1989 թ. հուլիսյան պլենումների և մեր հանրապետությունում երկրաշարժի հետևանքների վերացման մասին ԽՄԿԿ Կենտկոմի ու միութենական կառավարության կենսականորեն կարևոր որոշումներից:

Մենք նպատակ ենք դրել ճշտորեն գնահատել հանրապետությունում ստեղծված իրավիճակը, նկատվող նեգատիվ միտումները, դրանք հաղթահարելով կայունացնել էկոնոմիկան և սկսել բնակչության նյութական և հոգևոր պահանջարկի անհետաձգելի բավարարման պլանային պրոցեսը:

Երկրաշարժը վիթխարի նյութական վնաս հասցրեց հանրապետության ժողովրդական տնտեսությանը: Ընդհանուր վնասը կազմում է ավելի քան 13 մլրդ ռուբլի կամ հանրապետության ազգային հարստության մեկ երրորդը: Տարերային աղետն իր հետ բերեց նաև առանց այդ էլ ծանր դրության առավել բարդացում, որը ստեղծվել էր 1988 թ. բոլոր ճյուղերում իրավիճակի անկայունության և Ադրբեջանական ԽՍՀ-ից հարյուր հազարավոր հայերի բռնի տեղահանության հետևանքով: Դրան ավելացավ հարևան հանրապետության կողմից տնտեսական շրջափակումը: Սկսած դեռևս անցյալ տարվա հուլիսից Ադրբեջանի ծայրահեղականների կողմից Հայկական ԽՍՀ ճանապարհային շրջափակման հետևանքով ծայրահեղ լարված վիճակ ստեղծվեց երկաթուղով ու ավտոտրանսպորտով բեռների և ուղևորների փոխադրման գործում: Բացառիկ ծանր էր իրավիճակը հատկապես սեպտեմբերին, և այդ լարվածությունը չնվազեց մինչև տարեվերջ: Հանրապետության ժողովրդական տնտեսությունն ընկավ ծանրագույն վիճակի մեջ: Հումքի և վառելիքի բացակայության պատճառով կազմալուծվեցին տնտեսության շատ ճյուղեր, բարդացավ սննդամթերքով բնակչության ապահովման վիճակը:

*ՄԿՐՏՉՅԱՆ ՄԿՐՏԻՉ ՑՈԼԱԿԻ— ՀԽՍՀ Մինիստրների խորհրդի նախագահի տեղակալ, պետական պլանային կոմիտեի նախագահ:*



Շրջափակումը լուրջ վնաս հասցրեց նաև մեր գործընկերներին՝ սպառողներին և մատակարարողներին երկրի մյուս ռեգիոններում և արտասահմանում: Ձեռնարկությունների պահեստներում կուտակվել էին ժողովրդական սպառման ապրանքների զգալի պաշարներ, որոնք նախատեսված էին ինչպես հանրապետությունում, այնպես էլ նրա սահմաններից դուրս գտնվող սպառողների համար:

Ադրբեջանական ԽՍՀ երկաթուղով շարժումը պաշտոնապես վերականգնվելուց հետո շրջափակումը, սակայն, այլ բնույթ կրեց: Այսպես, ստացվող բեռներում բացակայում էին վառելիքաքսուքային նյութերը և պարենային ապրանքները, որոնցով բեռնված վագոնները անջատվում էին: Աղետի գոտում ժամանակավոր բնակության համար նախատեսված վագոն-տնակները ստացվում էին ապակոմպլեկտավորված, շահագործման համար ոչ պիտանի վիճակում: Մինչդեռ հանրապետության քաղաքներում և շրջաններում մոտ 500 հազար մարդ երկրաշարժի հետևանքով մնացել էր անօթևան, և եթե դրան էլ ավելացնենք շուրջ 220 հազար փախստականներին, ապա վիճակը ավելի քան պարզ կլինի:

1989 թ. ինն ամսվա արդյունքներով պետական կապիտալ ներդրումների լիմիտները ներգրավված կազմակերպությունների կողմից յուրացվեցին տարվա պլանային առաջադրանքի կեսի չափով: Շրջափակման հետևանքները ծայրահեղորեն բացասաբար անդրադարձան բնակարանների և սոցիալ-կուլտուրական ու կենցաղային նշանակության մյուս օբյեկտների շինարարության վրա: Շրջափակման պատճառած ամբողջ վնասը ճյուղին կազմել է 50 մլն ռուբլի: Հսկայական վնասներ կրեց հանրապետության գյուղատնտեսությունը (շուրջ 56,2 միլիոն ռուբլի): Տրանսպորտում կորուստները կազմեցին 34 մլն ռուբլի: Համանման իրավիճակ ստեղծվեց նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում: Այսպիսով, շրջափակման հետևանքով հանրապետության ժողովրդական տնտեսությանը պատճառված ուղղակի տնտեսական վնասը միայն 1989 թվականի երրորդ եռամսյակում կազմեց 229 մլն ռուբլի, իսկ անուղղակի վնասը՝ 1,38 մլրդ ռուբլի:

Ներկայումս հանրապետությունում միջոցներ են ձեռնարկվում ավերիչ երկրաշարժի, շրջափակման և մյուս աղետների հետևանքները վերացնելու, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում իրադրությունը կայունացնելու համար, որոնց շնորհիվ նկատվել են դրական միտումներ: Ստեղծված ազգային եկամուտը, հաշվի առնելով նաև ներգրավված շինարարական կազմակերպությունների աշխատանքների ծավալը, 1988 թ. համեմատությամբ, 1989 թ. աճեց 13,5, հասարակական աշխատանքի արտադրողականությունը՝ 15,5 տոկոսով: Չնայած արդյունաբերական արտադրության ծավալը 4,6 տոկոսային կետով պակաս է 1988 թ. մակարդակից, սակայն ավերված կարողությունների վերականգնման և աղետի գոտուց դուրս գտնվող ձեռնարկությունների հզորությունների արդյունավետ օգտագործման շնորհիվ ճեղքվածքը 1,5 մլրդ ռուբլուց նվազեց մինչև 375 միլիոն ռուբլի:

Ապահովվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության, մանրածախ ապրանքաշրջանառության ծավալների, բնակչության վճարովի ծառայությունների պլանների կատարումը, որի շնորհիվ որոշ չափով բարելավվել է հանրապետության դրամաշրջանառության վիճակը:

Վերականգնման աշխատանքները հնարավորություն կտան ընթացիկ տարում ստեղծել անհրաժեշտ աշխատատեղեր, դրա շնորհիվ աղետի գոտում հիմնականում կկարգավորվի բնակչության զբաղվածության պրոբլեմը:

Բացի այդ, ձեռնարկված միջոցառումների շնորհիվ տեղավորված են 108 հազար փախստականներ: Աստիճանաբար լուծվում են նաև նրանց բնակարանների փոխանակման, վնասի հատուցման, անհատական շինարարության համար հողակտորների ու վարկի հատկացման, աշխատանքային ստաժի, գրանցման և այլ հարցեր: Փախստականներին ցույց է տրվել դրամական օգնություն:

Այսօրվա վիճակով լուծված է շուրջ 20.000 փախստականների թոշակով ապահովելու հարցը: Կազմակերպված է սովորողների և ուսանողների հետագա ուսման գործը: Հանրապետության կառավարությունը ռեալ ուղիներ է փնտրում փախստականների բնակարանային խնդրի կարգավորման համար: Բաղրամյանի և Աշտարակի շրջաններում, ինչպես նաև Աբովյանում, Հրազդանում ու Չարենցավանում կնախագծվեն և կկառուցվեն 8.000 ընտանիքների համար կոոպերատիվ բնակելի տներ: Այդ նպատակով հատկացվել է շուրջ 800 հեկտար հող և շուրջ 10 մլն ռուբլի արտոնյալ վարկ:

Միջոցներ են ձեռնարկված գյուղական վայրերում արդյունաբերական ձեռնարկությունների մասնաճյուղեր և կոոպերատիվներ ստեղծելու, գազիֆիկացման, ջրա-

մատակարարումը կարգավորելու, ճանապարհաշինության ասպարեզում: Ստեղծվում է շինարարական ինդուստրիայի հզոր բազա, ընդարձակվում է երկաթուղու ցանցը:

Դրա հետ մեկտեղ, հանրապետության ժողովրդական տնտեսության 1989 թ. զարգացման պլանի վերլուծությունը ցույց է տալիս, որ գոյություն ունեցող իրավիճակը չափազանց լարված է, և առանձին ճյուղերում թերակատարվում է պլանը:

1990 թ. պլանը մշակելիս առաջին հերթին նկատի է առնվել հանրապետության համար ամենագլխավոր խնդիրը՝ ստեղծված իրավիճակում ապահովել այն բոլոր աշխատանքները, որոնք նպատակամղված են տարերային աղետից ավերված ժողովրդական տնտեսության վերականգնմանը: Սահմանված ժամկետներում պետք է ապահովել արտադրական կարողությունների, սոցիալական ոլորտի վերականգնումը, այն հասցնելով նվազագույնը 1988 թ. մակարդակին:

Աղետի գոտում պետական կապիտալ ներդրումների ծավալը կկազմի 2 մլրդ 622 մլն ռուբլի, այդ թվում շինմոնտաժային աշխատանքները՝ 1 մլրդ 945 մլն ռուբլի, 1989 թ. պլանի դիմաց համապատասխանաբար 21,6 տոկոս և 31 տոկոս աճով: Ներգրավված կազմակերպությունների կապիտալ ներդրումները ընդհանուր ծավալում կկազմեն 1 մլրդ 800 մլն ռուբլի, իսկ շինմոնտաժային աշխատանքներում՝ 1 մլրդ 400 մլն ռուբլի: Ոչ արտադրական ոլորտի օբյեկտների կառուցմանը հատկացվող միջոցների բաժինը շինմոնտաժային աշխատանքների ընդհանուր ծավալում 1989 թ. 70,5 տոկոսից կհասնի մինչև 74,6 տոկոսի: Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին աղետի գոտում նախատեսված է շահագործման հանձնել 4,5 մլն քմ ընդհանուր մակերեսով բնակարաններ, 65,6 հազար աշակերտական տեղով հանրակրթական դպրոցներ, 20,7 հազար տեղով մանկական նախադպրոցական հիմնարկներ, 2555 մահճակալով հիվանդանոցներ: Աղետի գոտու ձեռնարկությունների արդյունաբերական արտադրանքի ծավալի աճը նախատեսված է տարեկան 1,5 անգամ, ժողովրդական սպառման ապրանքների արտադրությանը՝ 63,9 տոկոս:

Ոչ աղետի գոտու, հատկապես Երևան քաղաքի սոցիալ-տնտեսական հետագա զարգացմանը ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին 1990 թ. նախատեսված է հատկացնել շուրջ 1,1 մլրդ ռուբլի կապիտալ ներդրումներ, այդ թվում ոչ արտադրական օբյեկտների համար՝ լիմիտների ընդհանուր ծավալի 22,1 տոկոսը:

Պլանը նպատակամղված է նաև հանրապետության սոցիալ-տնտեսական վիճակի բարելավմանը, էկոնոմիկայի ֆինանսական առողջացմանը, բնակչության կենսամակարդակի բարձրացումն ապահովող բոլոր կենտրոնացված և հնգամյակի սոցիալական ծրագրով նախատեսված միջոցառումների իրականացմանը: Այս կարևոր ընթացիկ խնդիրները սերտորեն կապված են XIII հնգամյակում մեր էկոնոմիկայի արագացված զարգացման համար նյութատեխնիկական նախադրյալներ ստեղծելու անհրաժեշտության հետ: Դրանց իրականացումը հնարավոր է, առաջին հերթին, հանրապետության էկոնոմիկայի դինամիզմի ուժեղացման դեպքում: Այդ կապակցությամբ նախատեսված է արտադրված ազգային եկամուտը մեկ տարում ավելացնել 9,9 տոկոսով՝ 1986—1989 թթ. 1,5 տոկոս միջինի փոխարեն, իսկ սպառման և կուտակման համար օգտագործվող ազգային եկամուտը՝ համապատասխանաբար ավելի քան 30 տոկոսով՝ նախորդ 4 տարվա 5,8 տոկոս միջինի դիմաց: Սրանք խիստ լարված տեմպեր են: Սակայն դրանց նվազեցումը կնշանակեր հրաժարվել մի շարք կենսական և հրատապ սոցիալ-տնտեսական խնդիրների լուծումից:

Հանրային արտադրության տեմպերի արագացումը պետք է ձեռք բերվի պլանի սոցիալական կողմնորոշման ուժեղացման պայմաններում: Այն բնութագրվում է բնակչության կարիքների առաջնահերթ բավարարմանն ուղղված մի շարք կառուցվածքային տեղաշարժերով: Մասնավորապես, օգտագործելով ազգային եկամտի կառուցվածքում ընթացիկ սպառման և ոչ արտադրական շինարարության ռեսուրսները պլանի նախագծում հասցված են 80,5 տոկոսի: Սա զգալի մակարդակ է, և դրա լիակատար ու արդյունավետ իրագործումը հնարավորություն կտա հասնելու բնակչության կենսամակարդակի նոր բնագծերի: Սպառման օգտին խոշորագույն կառուցվածքային փոփոխություն է արդյունաբերության «Բ» և «Ա» խմբերի արտադրանքի ավելացման համամասնությունների հարաբերակցությունը: Եթե արդյունաբերական արտադրությունը ամբողջությամբ նախատեսված է 1990 թ. ավելացնել 10 տոկոսով, ապա այդ թվում «Բ» խմբինը՝ 14,8, իսկ «Ա» խմբինը՝ միայն 6,3 տոկոսով:



Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը սահմանված է 5 մլրդ 756 մլն ռուբլու ծավալով, մեկ տարում 21,8 տոկոս աճով՝ 4 տարվա 2,6 տոկոս միջին տարեկան աճի դեպքում: Փաստորեն հնգամյակի արդյունքներով աճը կկազմի 36,2 տոկոս և հնգամյակի առաջադրանքը կգերազանցի 306 մլն ռուբլով:

Պարենային ապրանքների արտադրությունը կաճի 5,7 տոկոսով՝ բնակչության 1,1 տոկոս աճի դեպքում, ոչ պարենային ապրանքներինը՝ 26,6 տոկոսով: Խիստ լարված այս առաջադրանքները հնարավոր նյութական ռեսուրսների և արտադրական հզորությունների օգտագործման վերին սահմանն են:

Պլանի մյուս ցուցանիշների համեմատությամբ նախատեսված է մանրածախ ապրանքաշրջանառության (117,3 տոկոս) և բնակչությանը ցույց տրվող վճարովի ծառայությունների (111,7 տոկոս) առաջանցիկ աճ: Ըստ էության առաջին անգամ են ծրագրվում նման հիմնարար փոփոխություններ հանրապետության էկոնոմիկայի ողջ սպառողական սեկտորի տեմպերում և համամասնություններում:

Պլանի սոցիալական ուղղվածությունն ապահովվում է նաև համապատասխան ինվեստիցիոն քաղաքականությամբ: Շինմոնտաժային աշխատանքների ընդհանուր ծավալից 43,6 տոկոսն ուղղվում է ոչ արտադրական ոլորտին (1989 թ. 39,3 տոկոսով):

Արդյունաբերության պաշտպանական ճյուղերի կոնվերսիայի շնորհիվ այդ ձեռնարկություններում ժողովրդական սպառման ոչ պարենային ապրանքների արտադրությունը կավելանա 62,6 տոկոսով:

Այսպիսով, 1990 թ. պլանում, առկա հնարավորությունների սահմաններում, էկոնոմիկան վերակողմնորոշվում է սոցիալական պրոբլեմների առավել լրիվ լուծմանը: Եվ դա ժամանակավոր միջոցառում չէ, այլ երկարաժամկետ ուղղություն, որն իր հետագա զարգացումը կգտնի XIII հնգամյակում:

Բնական է, որ նշված սոցիալական ծրագրի իրականացումը հնարավոր է միայն արտադրության արդյունավետության շոշափելի բարձրացման պայմաններում: Պլանավորված է հասարակական աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 4,7 տոկոսով՝ 1986—1988 թթ. միջին 1,1 տոկոս աճի դիմաց, ֆոնդահատույցը ավելացնել 3,8 տոկոսով:

Սոցիալական ոլորտում ինվեստիցիայի ակտիվացման հիման վրա կիրականացվեն երկրաշարժի հետևանքների վերացման նպատակով կառավարության հաստատած ծրագրերը: Ֆինանսավորման բոլոր աղբյուրների հաշվին 1990 թ. կգործարկվեն 5,8 մլն քմ ընդհանուր մակերեսով բնակելի տներ, 81 հազար տեղով հանրակրթական դպրոցներ, 29,1 հազար տեղով նախադպրոցական հիմնարկներ, 3680 հիվանդանոցային մահճակալներ և այլն: Բնակարանային պրոբլեմի լուծման նպատակով նախատեսված է կառուցել 1,5 մլն քմ անհատական բնակելի տներ քաղաքացիների միջոցների և պետական վարկերի ներգրավմամբ: Բացի այդ, 1990 թ. պլանավորվում է վերականգնել 450 հազար քմ ընդհանուր մակերեսով տուժած բնակելի տներ: Հարկ է, սակայն, ընդգծել, որ լուրջ մտահոգության տեղիք է տալիս բնակարանային շինարարության վիճակը հանրապետությունում և հատկապես աղետի գոտում:

1990 թվականի պլանի սոցիալական հիմնական հարցերից է բնակչության կենսամակարդակի բարձրացման՝ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատների առաջին համագումարի և Գերագույն խորհրդի, ՀԽՍՀ Գերագույն խորհրդի վերջին նստաշրջանների որոշումներով նախատեսված կենտրոնացված միջոցառումների անթերի իրականացումը: Տնտեսավարման նոր պայմաններում սոցիալական մեծածավալ աշխատանքներ կկատարվեն նաև ձեռնարկությունների միջոցների հաշվին:

Պլանավորված 4,6 մլրդ ռուբլու մանրածախ ապրանքաշրջանառությունը կավելանա 17,3 տոկոսով, վճարովի ծառայությունների իրացման ծավալը՝ 11,7 տոկոսով, այսինքն՝ դրանց տեմպերը ավելի ցածր են, քան բնակչության դրամական եկամուտների աճը (36,6 տոկոս): Այստեղից դժվար չէ տեսնել, որ 1990 թ. պլանը կազմված է ծախսերի նկատմամբ բնակչության դրամական եկամուտների գերազանցումով: Դրամական միջոցների էմիսիան սահմանված է 1 մլրդ 86 մլն ռուբլի գումարով:

Հանրապետության դրամաշրջանառությունը բարելավելու նպատակով մինիստրությունների և գերատեսչությունների, միավորումների և ձեռնարկությունների ղեկավարները պետք է խստացնեն վերահսկողությունը աշխատանքի վարձատրման ֆոնդի օգտագործման նկատմամբ, կարգավորեն մանրածախ-մեծածախ ապրանք-

ների, առանձնապես անտառանյութի և շինանյութերի վաճառքը: Տնտեսական մարմինները պետք է այս հարցերին հատուկ ուշադրություն դարձնեն, քանի որ այստեղ բացասական պրոցեսները խրոնիկական կայուն բնույթ են ստացել և պահանջում են ձեռնարկել անհետաձգելի միջոցներ:

Սպառողական շուկայի կայունացման գործում վճռական է ագրոարդյունաբերական համալիրի դերը: Գյուղատնտեսության զարգացման պլանը կազմվել է՝ հաշվի առնելով երկրաշարժի հետևանքների վերացման իրական հնարավորությունները:

Ագրոարդյունաբերական համալիրի համախառն արտադրանքը կաճի 106,5 տոկոսով: Բուսաբուծական արտադրանքի գնումները սահմանված են հետևյալ չափերով. հացահատիկ՝ 56 հազար տոննա, կարտոֆիլ՝ 130 հազար տոննա, բանջարեղեն՝ 335 հազար տոննա, խաղող՝ 200 հազար տոննա, պտուղ՝ 125 հազար տոննա:

Անասնապահության մեջ առկա դժվարությունները կապված են գլխաքանակի վերականգնման հետ, առանձնապես բնակչության անձնական օժանդակ տնտեսություններում: Այդ նպատակով Միության տարբեր ռեգիոններից և արտասահմանից արդեն ներմուծվել է ավելի քան տասը հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, մոտ յոթ հազար գլուխ խոզ, 4200 գլուխ ոչխար և այլն: Այս առնչությամբ աշխատանքները առավել կակտիվացվեն ընթացիկ տարում: 1990 թ. երկրի այլ ռեգիոններից և արտասահմանից կներմուծվի 32,3 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 45 հազար գլուխ ոչխար և 32,8 հազար գլուխ խոզ: Սակայն չի կարելի հույսը դնել միայն դրսից ձեռք բերվող գլխաքանակի վրա: Անասնապահության հետագա զարգացման հուսալի նախադրյալը սեփական հոտի վերարտադրության, տոհմային աշխատանքի ուժեղացման, անասնաբուժական միջոցառումների կիրառման հետևողական աշխատանքն է:

Ագրոարդյունաբերական համալիրի կոլեկտիվների, ժողովրդական դեպուտատների շրջանային խորհուրդների առջև դժվար, բայց միանգամայն իրագործելի խնդիր է դրված՝ ոչ միայն կատարել, այլև զգալիորեն գերակատարել գյուղատնտեսական ապրանքների արտադրության ծավալների պլանները՝ հանրապետության և առաջին հերթին երկրաշարժի գոտու պարենային մատակարարումը բարելավելու համար: Համալիրի ճյուղերի զարգացման ծրագիրը իրականացնելու նպատակով նախատեսված են ավելի քան 500 մլն ռուբլու ներդրումներ, որոնք գերազանցում են հնգամյա պլանի լիմիտները: Գյուղական տարածքներում ոչ արդյունաբերական շինարարության համար նախատեսվում է ավելի քան 110 մլն ռուբլի, որը մեկ երրորդով ավելի է անցած տարվա պլանից:

Բնակարանների, դպրոցների, ջրատար և գազատար ցանցերի, ինչպես նաև պինդ ծածկույթով ճանապարհների շինարարությունը նույնպես պլանավորված է հնգամյա առաջադրանքի գերազանցումով: Գյուղում անհատական բնակարանային շինարարությունը 2,4 անգամ ավելի կլինի, քան 1989 թվականին:

Նյութական արտադրության մեջ առաջնությունը նախկինի նման կտրվի արդյունաբերությանը, որի զարգացումը 1990 թ. նախատեսված է երկրաշարժի հետևանքների վերացման նպատակով շինարարական-վերականգնման աշխատանքները շարունակելու պայմաններում: Արդյունաբերական արտադրանքի թողարկումը ընդհանուր առմամբ կաճի 10 տոկոսով, ընդ որում, երկրաշարժից տուժած, սակայն 1989—1990 թթ. իրենց հզորությունները վերականգնող ձեռնարկություններում արտադրանքի աճը կլինի ավելի զգալի՝ մոտավորապես մեկուկես անգամ: Հարկ է նշել, որ տարերային աղետից ավերված արտադրական պոտենցիալը արդեն այս տարի հիմնականում կվերականգնվի: Արդյունաբերական արտադրանքի ծավալը ոչ միայն կհասնի 1988 թ. մակարդակին, այլև այն կգերազանցի 650 մլն ռուբլով:

Զարգացման բարձր տեմպեր են նախատեսված մեքենաշինական (114,5 տոկոս), սոցիալական (122,3 տոկոս) և շինարարական (115,9 տոկոս) համալիրներում:

Արդյունաբերության կառուցվածքային տեղաշարժերը բնութագրվում են այն բանով, որ 1989 թ. պլանի մակարդակից ցածր են նախատեսված վառելիքաէներգետիկ համալիրի արտադրության ծավալները՝ հայկական ատոմակայանի կանգնեցման պատճառով, և քիմնտառային համալիրի արտադրության ծավալները՝ Կիրովականի քիմգործարանի վնասակար արտադրությունները վերացնելու, դրանք



սինթետիկ կորունդների և հատուկ բյուրեղների արտադրության վերափոխելու, «Նաիրիտ» գիտաարտադրական միավորման ու Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի վնասակար արտադրությունները փակելու կապակցությամբ:

Մինիստրությունների և գերատեսչությունների, ձեռնարկությունների և միավորումների ղեկավարները պլանի կատարման ընթացքում պետք է միջոցներ ձեռնարկեն արտաքին տնտեսական կապերի վերակառուցման, արտահանման կառուցվածքի կատարելագործման և մատակարարումների ավելացման նպատակով:

Ավտոմոբիլային տրանսպորտում նախատեսվում է տարվա ընթացքում բեռնափոխադրումների ծավալն ավելացնել 13,3 տոկոսով: Լայն աշխատանքներ կկատարվեն կրճատելու բենզինի ծախսը, այն գազային և դիզելային վառելիքով փոխարինելու ճանապարհով:

Երկաթուղային տրանսպորտում նախատեսվում է բեռնափոխադրումների ծավալը հասցնել մինչև 16,5 մլն տոննայի, որը 4,4 տոկոսով ավելի կլինի, քան 1989 թ.: Բեռնաշրջանառությունը կաճի 1,9 տոկոսով: Կշարունակվի հանրապետությունից երկաթուղային ճանապարհների նոր ելքի շինարարության հարցի քննարկումը: ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի՝ երկրաշարժի հետևանքների վերացման հանձնաժողովի հանձնարարությանը համապատասխան, «Հայպետտրանսնախագիծ» ինստիտուտը մշակել է Լենինական—Բոգդանովկա նոր երկաթուղու շինարարության նպատակահարմարության տեխնիկատնտեսական հաշվարկները: Ներկայումս այդ հաշվարկները գտնվում են փորձաքննության պրոցեսում, որի ավարտից հետո կսկսվի շինարարության հարցի քննարկումը:

Ֆինանսավորման բոլոր աղբյուրների (այդ թվում աղետի գոտում ներգրավված կազմակերպությունների) հաշվին կապիտալ շինարարությունում նախատեսվում են շուրջ 4,7 մլրդ ռուբլու ներդրումներ, 16 տոկոսով ավելի 1989 թ. պլանի համեմատությամբ:

Ծարունակում է մեծ ծավալ կազմել հանրապետության տարածքում անավարտ շինարարությունը: Այն կկազմի 2,6 մլրդ ռուբլի կամ 98,9 տոկոս՝ 72 տոկոս նորմատիվի դեպքում: Անավարտ շինարարության ծավալի կարգավորման նպատակով մինիստրությունները և գերատեսչությունները, ինչպես նաև միութենական ենթակայության ձեռնարկություններն ու կազմակերպությունները պետք է նկատի առնեն յուրաքանչյուր կառույցի հետագա ճակատագրի հարցը, էապես կրճատեն դրանց ծավալները: ԽՍՀՄ կառավարությունը որոշում է ընդունել շինարարական աշխատանքները տնտեսավարման նոր սկզբունքների փոխադրելու մասին: Արդեն այս տարվանից կանցնենք միայն պատրաստի արտադրանքով պատվիրատուներին հաշվետու լինելու և շինարարական կազմակերպությունների գործունեության գնահատականի սկզբունքին: Զգալիորեն ընդլայնվել են ոչ արդյունաբերական օբյեկտների լիովին ավարտված շինարարության և սկսվող օբյեկտների վարկավորման ծավալները:

Այս տարվա պլանում էական առաջնություն է տրվել էկոլոգիական պրոբլեմներին: Շրջակա միջավայրի պահպանության միջոցառումների համար նախատեսվում է հատկացնել 59 մլն ռուբլու կապիտալ ներդրումներ կամ մեկուկես անգամ ավելի: Նման աճ չկա ոչ մի ճյուղում: Մասնավորապես նախատեսվում է շահագործման հանձնել մեկ օրում 17 հազար խմ հզորությամբ կենսաբանական մաքրման կառուցվածքները Սիսիանում: Սևան քաղաքում կգործարկվի տարեկան 1,5 մլն հատ ձկնիկի հզորությամբ փորձնաարտադրական ձկնաբուծարանը: Կշարունակվեն Երևանի աերացիայի կայանի ընդլայնման, Կիրովականի մաքրման կառուցվածքների շինարարության, ինչպես նաև Սևանա լճի շուրջը կոյուղու կոլեկտորի շինարարության աշխատանքները:

Արտաքին տնտեսական գործունեության ոլորտում ձեռնարկությունների իրավունքների ընդլայնման վերաբերյալ կառավարության ձեռնարկած միջոցառումների շնորհիվ մեծացել են արտահանության համար թողարկվող ապրանքների ծավալների ավելացման հնարավորությունները: Նախատեսվում է այս տարի արտահանման ծավալը հասցնել մինչև 25 մլն ռուբլու: Ինչպես հայտնի է, երկրաշարժի հետևանքների վերացման կապակցությամբ հանրապետության ձեռնարկություններից և միավորումներից բազմաթիվ առաջարկություններ են ստացվել համատեղ ձեռնարկություններ ստեղծելու վերաբերյալ: Կնքվել են շուրջ երկու տասնյակ արձանագրություններ արտասահմանյան ֆիրմաների և հանրապետության պետագրոարդի, պետշինի, թեթևարդմինի, տեղարդմինի և այլ մինիստրությունների ու գերատեսչությունների միջև:

ֆինանսական ու տնտեսական մասնակի օգնության բնույթ: Այսուհետև այդ աշխատանքները պետք է պլանավորվեն որպես միասնական մարմնի գործունեություն: Հանրապետության պետպլանը, մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ, առաջիկայում պետք է արմատական միջոցներ ձեռնարկի Ղարաբաղի սոցիալ-տնտեսական զարգացման համար՝ այն մտցնելով Հայաստանի սոցիալ-տնտեսական զարգացման ընդհանուր պլանի մեջ:

Այն, ինչի համար շուրջ երկու տարի պայքարի է դուրս եկել մեր ժողովուրդը, հնարավոր է իրականացնել միմիայն հանրապետության և առավել ևս՝ Ղարաբաղի տնտեսական պոտենցիալի աննախադեպ հզորացման միջոցով: Դրանից էլ բխում է Ղարաբաղում շինարարությանը լայն թափ հաղորդելու անհրաժեշտությունը: Ընդ որում, այդ աշխատանքները պետք է իրականացվեն արագացված տեմպերով, ամենասեղմ ժամկետներում:

1990 թվականի պլանի ցուցանիշներն ու համամասնությունները, չնայած բոլոր բարդություններին ու դժվարություններին, նպատակամղված են էկոնոմիկայի սոցիալական վերակողմնորոշմանն ու ֆինանսական առողջացմանը և նախատեսում են լուծել մի շարք կենսականորոր պրոբլեմներ:

Խնդիրն այն է, որպեսզի այժմ բնակչության բոլոր խավերն ընդգրկող հասարակական ակտիվությունը նպատակամղված լինի կորուստների և անտնտեսվարության դեմ, աշխատանքային և կատարողական կարգապահության ամրապնդման համար մղվող պայքարին: Առանց լարված աշխատանքի մենք չենք կարող դուրս գալ այն ծանր դրությունից, որի մեջ գտնվում է հանրապետությունը, չենք կարող լուծել բնակչության կյանքի բարելավման ոչ մի խնդիր: Մեր պարտքն է 1990 թ. պլանը դարձնել հասարակության բոլոր ուժերի համախմբման պլան՝ ուղղված էկոնոմիկայի լիակատար առողջացմանը և սոցիալական առաջադիմությանը:

---

*Հեղինակի խնդրանքով հոդվածի հոնորարը փոխանցվում է երկրաշարժից տուժածների օգնության ֆոնդին:*



# ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ

**Ա. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**

ԱՅՍ ՀՈԴՎԱԾՈՒՄ ՇԱՏ ՄՏՔԵՐ տեղյակ մարդկանց կարող են ներկայանալ իբրև տարրական ճշմարտություններ: Բայց, ինչպես ցույց է տալիս կյանքը, այսօրվա մեր վերափոխումները շատ հաճախ մենք պետք է սկսենք տարրական ճշմարտությունները հիշելով:

Օրինակ, ի՞նչ է կուսակցությունը առհասարակ: Այս վերջին յոթանասուն տարում մեր հասարակության մեջ ստեղծվել է մի պատկերացում, որ շատ հեռու է կուսակցություն բառի իսկական նշանակությունից: Մենք իմացել ենք, որ կուսակցությունը մեր հասարակության ավանգարդն է, որ համախմբում է հասարակության լավագույն մասին, և այն, ինչ ասում է կուսակցությունը, բարձրագույն ճշմարտություն է, որին ուրիշ ճշմարտություն չի կարող հակադրվել: Այդ ուրիշ ճշմարտությունը չի էլ կարող լինել:

Բայց իսկապես ի՞նչ է նշանակում կուսակցություն: Դա որևէ գաղափարի շուրջ համախմբված մարդկանց կազմակերպություն է, որը պայքարում է իր գաղափարները կենսագործելու համար: Բայց ամենակարևորը այն է, որ կուսակցությունը սովորաբար գոյություն ունի իբրև (հակադրություն այլ կուսակցությունների, այսինքն, որևէ կուսակցության գոյությունը իմաստ ունի միայն բազմակուսակցականության պայմաններում: Կուսակցությունները արտահայտում են հասարակական, սոցիալական տարբեր խմբերի շահերը, և զարգացման շատ թե քիչ նշանակալից ճանապարհ անցած ոչ մի հասարակություն միատարր չէ: Չմոռանանք, որ մեր կուսակցությունն ստեղծվել է թեև ոչ այնքան զարգացած երկրում, բայց իբրև հակակշիռ այլ կուսակցությունների: Հեղափոխության նախօրյակին Ռուսաստանում բազմաթիվ կուսակցություններ կային, և նրանց թվում մի քանի սոցիալիստական (և դեռ ամեն մի սոցիալիստական կուսակցության մեջ իր աջ ու ձախ թևերը կային):

Իմ նպատակը չէ հետազոտել այն պայմանները, որոնք մեր երկրում, հեղափոխությունից հետո շատ արագ հանգեցրին միակուսակցականության: Դա պատմաբանների գործն է: Ինձ հետաքրքրում է միակուսակցականության ֆենոմենը:

Եվ այսպես, մեր երկրում հաստատվեց միակուսակցական կարգ: Ջախջախվեցին ոչ միայն բուրժուական կուսակցությունները, այլև բոլոր սոցիալիստական կուսակցությունները մեր կուսակցությունից բացի: Հեղափոխությունից հետո առաջին տարիներին դա միանգամայն բնական էր թվում: Աշխատավոր ժողովրդի շահերը ամենից ավելի հարազատորեն ներկայացնող կուսակցությունը (որպիսին երկար ժամանակ ընկալվում էր բոլշևիկյան կուսակցությունը) այդ աշխատավորության կամքով դարձավ նոր ստեղծվող խորհրդային հասարակության անմրցակից ղեկավար:

Բայց արդեն քաղաքական մրցակից չունենալը կուսակցությանը դնում էր շատ

---

*ԵՂԻԱԶԱՐՅԱՆ ԱԶԱՏ ԿՈՄՈՒՆԱՐԻ— ՀԽՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտի բաժնի վարիչ, բանասիրական գիտությունների դոկտոր:*

վտանգավոր վիճակի մեջ, որը, հաղթանակի էյֆորիայով տարված՝ շատ քչերն էին զգում: Կուսակցության փաստաթղթերից այդ վտանգի անուղղակի զգացողությունը կա միայն Լենինի վերջին նամակներում ու ելույթներում: Կուսակցությունը իր ձեռքը վերցրեց իշխանության մենաշնորհը: Բայց հենց դա էր պատճառը այն գզվռտոցի, որ կուսակցության վերնախավում սկսվեց հանուն իշխանության Լենինի մահից հետո: Արդեն այդ ժամանակ կուսակցությունը կորցնում էր քաղաքական համախոհների կազմակերպություն լինելու իր գլխավոր հատկանիշը և դառնում անձնական իշխանության գործիք: Չկային արտաքին քաղաքական (այսինքն կուսակցությունից դուրս գտնվող) այնպիսի հանգամանքներ, որոնք կուսակցության ուշադրությունը բևեռեին քաղաքական, գաղափարական հանգամանքների վրա (ինչպես հայտնի է, այն ամենը, ինչ կատարվում էր քաղաքական-գաղափարական պայքարի անվան տակ, ամենահիմնական պայքար էր հանուն իշխանության, այն էլ անձնական իշխանության): Չկային ուրիշ կուսակցություններ: Իհարկե, շատ կարևոր էին նաև այնպիսի հանգամանքներ, որոնք բոլշևիկյան կուսակցությանը ուղեկցում էին նրա գոյության հենց սկզբից՝ երկար ժամանակ ընդհատակում լինելու հանգամանք, որը, հասկանալի է, չէր նպաստում ներկուսակցական դեմոկրատիայի ծավալմանը (թեև այն ժամանակներում եղածը ստալինյան ժամանակների հետ համեմատած կարող է թվալ ներկուսակցական դեմոկրատիայի բարձրակետ): Ընդհատակի ժամանակներից էին գալիս մեր կուսակցության ձգտումը դեպի ուժեղ կենտրոնացումը, այն նույն ցենտրալիզմը, որ, ինչպես կյանքը ցույց տվեց, դեմոկրատական կոչվելով, առանձնապես չէր փոխում իր էությունը, կուսակցական կարգապահության յուրահատուկ ըմբռնումը, որը հետո վերածվեց կուսակցության անդամի նկատմամբ մանրախնդիր հսկողությամբ, ընդհուպ մինչև նրա անձնական կյանքի հարցերը:

Այս ամենը արդեն կային, երբ Ստալինը դարձավ կուսակցության Կենտկոմի գլխավոր քարտուղար, իսկ ապա նաև կուսակցության ըստ էության միանձնյա ղեկավար: Եվ նա փայլուն ձևով օգտագործեց հակադեմոկրատական այն բոլոր միտումները, որոնք սաղմնային, թերզարգացած ձևերով կային կուսակցության կյանքում: Նա դրանք հասցրեց իրենց տրամաբանական սահմանին: Ովքեր կարդացել են Անատոլի Ռիբակովի վեպը, հիշում են Կենտկոմի ճյուղային բաժինների ստեղծմանը նվիրված էջերը: Ստալինը գիտակցաբար ուժեղացնում էր ապարատը, ոչ միայն կուսակցության, այլև երկրի ամբողջ կյանքը վերցնելով կուսակցական ապարատի հսկողության տակ: Նա կուսակցությունը դարձնում էր իր անձնական իշխանության գործիքը, դրանով իսկ վերջնականորեն վերացնելով կուսակցության՝ իբրև քաղաքական կազմակերպության հիմքերը: Կուսակցական զանգվածները, կուսակցական կազմակերպություններն ու կոմիտեները անշեղորեն զրկվում էին ազդեցությունից ու ուժից: Կուսակցությունը վերածվում էր կուսակցական ապարատի: Հապա խորացեք այժմ արդեն լայնորեն հայտնի մի քանի իրողությունների մեջ: Տարիներով չէին հրավիրվում ոչ միայն կուսակցության համագումարներ, այլև Կենտկոմի պլենումներ: Ինչ վերաբերում է Քաղբյուրոյի նիստերին, ապա այսօր մենք արդեն գիտենք, որ դրանք էլ, ըստ էության, տեղի չէին ունենում:

Այդ նիստերի փոխարեն Ստալինը սովորաբար խորհրդակցում էր իր կողմնակիցների նեղ շրջանի հետ: Ինչու՞ եմ հիշեցնում այս ամենը: Մենք պետք է մեզ հաշիվ տանք, որ Ստալինի կառավարման վերջին մեկուկես-երկու տասնամյակներում փաստորեն արդեն կուսակցություն այս բառի դասական իմաստով գոյություն չուներ: Նրան փոխարինում էր Ստալինի ղեկավարությամբ գործող մի ապարատ, որը քողարկվում էր կուսակցության անվամբ: Կուսակցական կյանքի որոշ ատրիբուտներ վերականգնվեցին Ն. Ս. Խրուշչովի Կենտկոմի առաջին քարտուղար աշխատելու տարիներին: Բայց խրուշչովյան շրջանը չի կարող համարվել կուսակցության վերածննդի շրջան: Ժողովների, պլենումների ու համագումարների կանոնավոր հրավիրումը, ըստ էության, ձևական անտուրաժ էր, որովհետև այդ բոլոր ժողովներն ու համաժողովները զրկված էին իսկապես ստեղծագործական ֆունկցիայից, նրանց, կուսակցական կարգապահության և կուսակցական համախմբվածության՝ դեռ Ստալինի ժամանակներում ձևավորված ըմբռնումներին միանգամայն համապատասխան, հաստատում էին այն ամենը, ինչ որոշում էին քաղբյուրոն, իսկ վերջին տարիներին՝ նաև անձամբ Խրուշչովը առանց քաղբյուրոյի: Հիշում եմ, ժամանակին Խրուշչովին աշխատանքից հանելը շատերի կողմից ընկալվեց իբրև մի չտեսնված բան՝ կուսակցության առաջնորդին հանում են աշխատանքից, առանց սպասելու, որ նա, այսպես ասած, բնական ճանապարհով հեռանա, ինչպես մինչև



այդ եղել էր: Եվ շատերը հակված էին այդ համարելու կուսակցական դեմոկրատիայի արտահայտություն: Բայց այսօր այդ էլ մենք գիտենք՝ դա ընդամենը պալատական հեղաշրջում էր, կատարված քաղբյուրոյի անդամների մի մասի ձեռքով: Այդ պլենումում, որը Խրուշչովին ազատեց աշխատանքից, մինչև անգամ մտքերի խանակություն տեղի չունեցավ՝ քաղբյուրոն հարմար չէր համարել:

Բրեժնևի իշխանության տարիներին կուսակցական դեմոկրատիան, կուսակցական կյանքի մնացած բոլոր հատկանիշները վերջնականապես վերածվեցին անբովանդակ ձևականության: Երբ հետադարձ հայացքով նայում ենք բրեժնևյան համագումարների ու պլենումների մեծ մասի որոշումներին, տեսնում ենք, որ դրանց մեջ արագ թափով նվազում էր երկրի դրության լուրջ վերլուծությունը, որովհետև բովանդակությունը կորցնում էր իր արժեքը. գլխավորը դառնում էր ձևը: Դեռ երբեք կուսակցական որոշումներն ու կարգախոսները այդքան բացահայտորեն կտրված չէին եղել երկրի իրական հոգսերից:

Եվ այսպես, Լենինից հետո կուսակցության բարձրագույն ղեկավար պաշտոնը (ի միջի այլոց, Լենինի ժամանակ այդպիսին գոյություն չուներ) զբաղեցրել են Ստալինը, Խրուշչովը, Բրեժնևը, միրարից խորապես տարբեր մարդիկ, որոնցից հատկապես վերջինը, դատելով ամեն ինչից՝ և նրանից, ինչ մենք տեսել ենք, և նրանից, ինչ հայտնի է դառնում միայն հիմա, միջակ կարողությունների տեր մարդ էր: Բայց դրա մեջ էլ իր տրամաբանությունը կար: Նախ, այս երեք անհատներին ընդհանուր էր մի բան՝ այսպես թե այնպես ընտրվելով կուսակցական բարձրագույն պաշտոնում, նրանք աստիճանաբար ձեռք էին բերում անսահմանափակ իշխանություն, նրանցից ամեն մեկը ստեղծում էր իր անձնական իշխանության ռեժիմը: Եվ այստեղից պարզ է ու սա հայտնագործություն չէ, որ անկախ այդ երեքից ամեն մեկի ընդունակությունների (ես արդեն չեմ խոսում Չեռնենկոյի մասին), մեր երկրում ստեղծված կարգերը, կուսակցական ապարատի գրաված դիրքերը (ապարատի և ոչ թե կուսակցության) անխուսափելիորեն նրանց տալիս էր որևէ բանով գրեթե չսահմանափակված իշխանություն: Բայց հիմա մեզ համար էականն այն է, որ նրանցից ամեն մեկը իր անսահմանափակ իշխանությունը ձեռք էր բերում Կենտկոմի գլխավոր կամ առաջին քարտուղարի պաշտոնից սկսած: Անսահմանափակ իշխանության սկիզբը կուսակցական իշխանությունն էր: Եվ արդեն նկատված է, որ քանի որ Բրեժնևի ժամանակ ապարատը արդեն շատ էր ուժեղացել, ուրեմն նրան պետք էր Բրեժնևի նման հմուտ ապարատային գործիչ, որն իբրև քաղաքական ու պետական գործիչ, երկնքից աստղեր վար բերող չէր: Չեռնենկոյի հայտնվելը մեր աստիճանակարգի բարձրագույն աստիճանին այս ճշմարտության արդեն անհեթեթության հասնող դրսևորումն էր:

Եվ այսպես, Բրեժնևի ու Չեռնենկոյի ժամանակներում առավել ուժով ընդգծվեց կուսակցական ապարատի հնկայական դերը մեր պետական համակարգում, նրա անբաժան իշխանությունը: Պետական բոլոր մարմինները կատարում էին կուսակցական ապարատի որոշումներն ու հրահանգները: Այս վիճակի մասին շատ է խոսվել և դեռ կխոսվի: Ես ուզում եմ ուշադրություն հրավիրել միայն սրանից բխող մի հետևության վրա: Բայց մինչև այդ հիշեցնեմ վերջերս շատ աղմուկ հանած՝ Անդրանիկ Միհրանյանի հոդվածը «Նովի միր» ամսագրում: Այստեղ նա գրում է նաև հետևյալը՝ կուսակցությունը կուլ տվեց պետությունը: Այս ձևակերպման հետ կարելի է համաձայնել մի էական ճշգրտումով՝ ոչ թե կուսակցությունը, այլ կուսակցական ապարատը: Երբ բոլշևիկյան կուսակցությունը նոր դեռ սկսում էր «կուլ տալ» պետությունը, այն ժամանակ նա դեռ պահում էր քաղաքական կուսակցության հատկանիշները: Բայց ինչքան այդ պրոցեսը խորանում էր, այնքան ՀամԿ(բ)Կ-ն կորցնում էր այդ հատկանիշները: Ոչ մի կուսակցություն չի կարող գոյություն ունենալ այդքան սերտանելով կամ «կուլ տալով» պետությունը: Այդ պահից սկսած՝ կուսակցության հատկանիշները գնալով թուլանում էին, իսկ կուսակցական ապարատի ուժը գնալով մեծանում էր:

Այստեղ բնական հարց պիտի ծագի՝ հապա կուսակցության միլիոնավոր անդամնե՞րը: Իմ գործը չէ խորանալ այն գործողությունների մեջ, որոնց միջոցով Ստալինը գիտակցաբար թուլացնում էր կուսակցական հին գվարդիայի դերը, և այդ այնքան էլ կարևոր չէ— դա, ըստ էության, Ստալինին հարկավոր էր իր իշխանությունը ամրապնդելու համար: Բայց կուսակցության ներսում տեղի ունեցող պրոցեսները շատ ավելի լայն էին ու խոր: Մենք ուշադրություն դարձնու՞մ ենք այն բանին, որ «կուսակցության մարտիկ» հասկացությունը որոշակի պայմաններում անիմաստ է: Այն նորմալ կուսակցական բառապաշարում կարող է գոյություն ու-

նենալ սուկ իբրև մոտավոր փոխաբերություն, որովհետև քաղաքական կուսակցությունը չի կարող բանակ լինել: Գուցե պատմական որոշակի պահերին այդպես լինում է— բայց այդ պահերը պետք է կարճ լինեն, պետք է դիտվեն իբրև անոմալիա: Այլապես ցանկացած կուսակցություն այդ պայմաններում կարող է վերասերվել: Բանակային մտածողությունը խորթ է կուսակցության բուն գաղափարին: Բայց մեր կուսակցության մեջ այդ մտածողությունը գնալով ոչ թե թուլանում, այլ ուժեղանում էր: Ի վերջո, դա հանգեցրեց այն բանին, որ կուսակցության անդամները, զգալով իրենց զինվորներ (կամ, ավելի վատ՝ պտուտակներ), դադարեցին մտածել, այդ մենաշնորհը վերապահելով կամ մեկ մարդու, կամ մի քանիսին: Գաղափարները կուսակցության կյանքում երրորդական-չորրորդական նշանակություն էին ստանում, որովհետև դա արդեն ոչ թե ամբողջ կուսակցության, այլ ապարատի ու վերնախավի հոգսն էր: Այս էլ մահացու հիվանդություն է քաղաքական կուսակցության համար: Ի՞նչ էր մնում՝ անթերի կատարել կուսակցության, այսինքն՝ ապարատի հանձնարարությունները: Իսկ սա անխուսափելիորեն պիտի հանգեցներ ավելի ծանր հիվանդության՝ մարդիկ կուսակցության մեջ պիտի փընտրեին ոչ թե գաղափարներ, այլ, սկզբում դոգմաներ, իսկ հետո բավարարվեին ավելի քչով՝ ընտրյալների կաստային պատկանելու առավելությամբ:

Այս վերջինը շատ կարևոր է կուսակցության դրաման հասկանալու համար: Այն հիմնադրվել և երկար ժամանակ եղել էր կուսակցությունը այն մարդկանց, որոնք ոչ միայն ոչ մի առավելություն չունեին հասարակության մեջ, այլև իրենց ենթարկում էին վտանգների և զրկանքի: Բայց երբ այն դարձավ կառավարող և միակ կուսակցություն, բնականաբար մարդիկ նրա շարքերում պետք է փնտրեին ոչ թե գաղափարական պայքարի հնարավորություն, այլ տաքուկ տեղերի ապահովման հնարավորություն: Ապարատին այս տեղաշարժը ձեռնտու էր: Այդ ձևով նա ստանում էր մարդկանց մի խումբ, որ պատրաստ էր նրան պաշտպանելու գոնե միանձնյա քվեարկության մեխանիզմով, իսկ իրեն էլ ապահովում էր հասարակության մեջ առաջ գնալու հնարավորություն:

Այսպիսի դեպքերում սովորաբար մեղադրում են գույները խտացնելու, միակողմանիության մեջ: Իհարկե, կուսակցության բազմամիլիոն անդամների մեջ կային և շատերը, որոնք, այսպես թե այնպես, կուսակցության մեջ տեսնում էին գաղափարներին ծառայելու միջոց: Բայց քանի որ գաղափարներով զբաղվելու մենաշնորհը, ինչպես ասացինք, վերևներինն էր (և դրան գումարած, տաբուները այնքան շատ էին, որ գործնականում անհնար էր որևէ շատ թե քիչ թարմ միտք առաջադրել), ապա կուսակցության անդամների այդ ոչ այնքան մեծ շերտը չէր կարող ռեալ ազդեցություն ունենալ կուսակցական գործերի վրա: Կար նաև մի ուրիշ խումբ, համեմատաբար ավելի մեծաթիվ. մարդիկ անկեղծորեն հավատում էին, որ կուսակցությունը այդպիսին էլ պետք է լինի, որ կուսակցության շարքերում նրանք պայքարում են հանուն ապագայի: Բայց այս խումբն էլ գնալով ավելի ու ավելի փոքրաթիվ էր դառնում: Կուսակցության անդամների հիմնական զանգվածը կազմում էին մարդիկ, որոնք «ղողում էին հոսանքի ուղղությամբ»՝ նրանք մեծացել էին միակուսակցության պայմաններում, տեսել, որ մարդկանց նշանակալի մասը որոշակի տարիքում ընդունվում են կուսակցության մեջ, նրանք էլ ընդունվում էին: Եվ այդ բոլոր մարդկանց ամենևին պետք չէ կարիերիստ համարել: Դրանք ավելի շուտ անտարբեր մարդիկ էին: Բայց կար նաև մի ուրիշ գիտակցություն՝ առաջ գնալու, լավ պաշտոններ գրավելու համար պետք է կուսակցության անդամ լինել: Անարդար կլինի բոլոր այս մարդկանց բացասական տիպեր համարել: Առաջ գնալու, նույնիսկ պաշտոններ գրավելու ձգտումը միշտ չէ, որ մերժելի է: Հասարակության մեջ ամեն մարդ պետք է հնարավորություն ունենա ստուգելու իրեն, փորձելու, ճիշտ որոշելու այն բնագավառը, որտեղ ինքը կարող է դրսևորել իր հնարավորությունները առավել լրիվ: Վատն այն է, որ դա կապվում էր կուսակցական անդամատոմս ունենալու հետ: Մենք լավ գիտենք, որ բացի գիտության ու արվեստի որոշ նեղ բնագավառներից, մնացած բոլոր ասպարեզներում առանց կուսատոմսի առաջ գնալ անհնար էր: Եվ ահա ամեն կողմից գրոհում էին կուսակցական կոմիտեները կուսակցության մեջ ընդունվողի անկետաներ ստանալու համար: Բնականաբար, այստեղ արդեն գաղափարներն ու սկզբունքները երկրորդական-երրորդական արժեք էին ստանում: Եվ ավելի ու ավելի էին ընդգծվում գծուծ նկատառումները: Ոմանց համար կուսակցական տոմսը անցաթուղթ էր դառնում, դեպի առենք, խանութի վարիչի պաշտոնը: Իսկ խանութի վարիչ դառնում էին (և առայժմ, դժբախտաբար, դառնում են), մեղմ ասած, ամենևին ոչ



գաղափարներին ծառայելու համար... Եվ այսպես, կուսակցական տոմսը ավելի ու ավելի էր դառնում կարիերիստական և կոպիտ-շահասիրական նկրտումների գործիք: Պատահական չէ, որ հատկապես վերջին մեկ-մեկուկես տասնամյակների ընթացքում այնքան տարածում ստացան խոսակցությունները կուսակցության մեջ ընդունվելու համար կաշառքներ տալու մասին: Ինչքան ինձ հայտնի է, Հայաստանում դեռ ոչ ոք չի պատժվել այսպիսի «կուսակցական» կաշառք տալու և վերցնելու համար: Բայց իրողությունն ինքնին իմ մեջ կասկած չի հարուցում: Կոռուպցիայի այնքան լայն ու խոր տարածման պայմաններում ինչու՞ կուսակցության մեջ ընդունելու գործով զբաղված մարմիններն ու աշխատողները պետք է հեռու մնային դրանից, ի՞նչ տրամաբանությամբ:

Այսպիսով, ԽՄԿԿ շարքերը ավելի ու ավելի խայտաբղետ էին դառնում ոչ միայն սոցիալական, այլև բարոյական իմաստով: Ազնիվ մարդկանց կողքին ամենաազնիվ ձգտումներով առաջնորդվող մարդիկ, գաղափարներ ու իդեալներ ունեցող մարդկանց կողքին՝ ավելի ու ավելի շատ անտարբեր, քաղաքականությունից հեռու մարդիկ: Այնքան խայտաբղետ, որ այլևս պարզ էր դառնում վերջնականապես, որ իսկական իմաստով քաղաքական կուսակցության մասին խոսել արդեն անհնար է:

Հետևաբար, անիմաստ էին դառնում խոսակցությունները նաև ԽՄԿԿ-ի հեղինակության մասին:

Ահա այսպիսին էր վիճակը ԽՄԿԿ-ում, երբ տեղի ունեցան նրա Կենտկոմի 1985 թ. մարտյան և ապրիլյան պլենումները: Դժվար է ասել, թե այդ վիճակն անցած չորսուկես տարիների ընթացքում արմատապես փոխվել է: Բայց արմատական փոփոխությունների գիտակցությունը ԽՄԿԿ-ի մեջ և նրանից դուրս շատ է արվել:

Անձամբ ինձ համար իմ այս բոլոր խորհրդածությունները ավելորդ կլինեին, եթե չլիներ ԽՄԿԿ-ի անհրաժեշտության գիտակցությունը, ավելի ճիշտ, խորապես, սկզբունքորեն նորացված կուսակցության անհրաժեշտության գիտակցությունը: Այն թելադրված է երկու նկատառումներով:

Առաջին. ժամանակակից հասարակության մեջ սոցիալիստական գաղափարները չեն կարող մոռացության մատնվել: Դա անհնար է. սոցիալիզմը արդյունք է հասարակական մտքի երկարատև ճիգերի, այն դարավոր պատմություն ունի, և մեր ու սոցիալիստական մյուս երկրների ողբերգական անհաջողությունները չեն նշանակում, որ այդ գաղափարները սխալ էին: Առհասարակ, դարերի փորձին ու ժառանգությանը պետք է շատ զգուշությամբ վերաբերվել: Սոցիալիզմը, ոչ թե մեր, «ստալինյանը», այլ այն սոցիալիստական գաղափարը, որը բազմաթիվ սերունդների գիտակցության մեջ կապվել է արդարության և մարդասիրության հետ, մնում է մարդկանց ձգտումների ու երազների առարկան: Բոլոր ձախ շարժումները, առանց որոնց այսօր անհնար է պատկերացնել ոչ միայն սոցիալիստական երկրները, այլև ամբողջ քաղաքակիրթ աշխարհը, ի վերջո համախմբվում են սոցիալիստական գաղափարների շուրջ: Մեր երկրում, ինչքան էլ մարդիկ զայրացած են ու հիասթափված, սոցիալիստական գաղափարները, այնուամենայնիվ, խոր արմատներ ունեն, և դժվար թե այսօր ԽՍՀՄ բնակչության մեծամասնությունը կուզենար վիճակը բարելավելու նպատակով վերադառնալ կապիտալիզմին: Պետք է, եթե կուզեք, վերածնել սոցիալիզմի գաղափարը, սոցիալական ու քաղաքական արդարության, մարդասիրության գաղափարը: Իսկ ո՞վ պետք է անի այդ, եթե ոչ սոցիալիստական գաղափարներով առաջնորդվող կուսակցությունը:

Մենք հիմա հաճախ ճիշտ ենք ասում, որ երկրում քաղաքական ռեֆորմները առաջ են անցել տնտեսական վերափոխումներից, և դա, անկասկած, ճիշտ է: Բայց ճիշտ է և այն, որ այդ իմաստով խիստ հետ է մնացել կուսակցությունը: Իսկ դա հղի է մեծ վտանգներով հենց մեր արմատական վերափոխումների համար: Հեղափոխական վերակառուցումները հաջողությամբ իրականացնելու համար անհրաժեշտ է ունենալ ժամանակակից սոցիալիստական կուսակցություն, որը լինի այդ ռեֆորմների գաղափարակիրը և իրականացնողը:

Հասարակության ամենալայն շրջաններում արդեն գիտակցվում է կուսակցության այսպիսի արմատական վերակառուցման անհրաժեշտությունը: Դրա վկայություններից մեկը կուսակցության հերթական համագումարի հրավիրումն արագացնելու որոշումն է: Բայց այդ համագումարին պետք է նախապատրաստվել շատ լրջորեն: Պետք է հիմնովին ազատվել դոգմատիկ և կանխակալ պատկերացումներից, ելնել օրվա պահանջներից, հասարակության զարգացման այսօրվա մակարդակից: Եվ ամենակարևորը՝ վերակառուցված կուսակցությունը պետք է լինի իս-

կապես քաղաքական կուսակցություն, և ոչ թե կուսակցական ապարատի, առավել ևս այս կամ այն ղեկավարի մարտական ջոկատը: Իսկ դա նշանակում է, որ այն պետք է գոյություն ունենա քաղաքական և գաղափարական մրցակցության պայմաններում, հրաժարվելով հասարակության միակտուր միասնության պատրանքներից: Ժամանակակից հասարակությունը չի կարող միատարր լինել, և ոչ մի կուսակցություն չի կարող ունենալ ողջ հասարակության շահերը ներկայացնելու մենաշնորհը:

Երբ մենք խոսում ենք քաղաքական պլյուրալիզմի մասին, պետք է հստակորեն գիտակցենք, որ այն չի կարող մնալ մի կուսակցության սահմաններում: Եվ կյանքն արդեն ցույց տվեց, որ նոր գաղափարները բերում են նոր կազմակերպություններ, որոնց պլատֆորմները երբեմն շատ ու շատ հեռու են կուսակցության պլատֆորմից: Լավ է, որ այդ կազմակերպությունների գործունեության միայն մի պայման է դրվում՝ գործել սահմանադրության շրջանակներում: Եվ այնքան էլ կարևոր չէ, թե այդ կազմակերպությունները իբրև ինչ են ներկայանում՝ իբրև ճակատ, խումբ, թե մի ուրիշ բան: Ապագայում՝ բազմակուսակցականությունից մենք խուսափել չենք կարող: Եվ նորացված սոցիալիստական կուսակցությունը պետք է գործի նրանց հետ մրցելով, միայն քաղաքական մեթոդներով մարդկանց տանելով իր հետևից: Ոչ մի քաղաքական կուսակցություն ժամանակակից հասարակության մեջ չի կարող իր կամքը պարտադրել ողջ հասարակությանը. այլապես այն կդադարի կուսակցություն լինելուց:

Ահա այս իրողության լույսի տակ պետք է դիտել մեր սահմանադրության 6-րդ հոդվածի խնդիրը: Պետք է վերացնել ոչ միայն և ոչ այնքան այդ հոդվածը, որքան այն ծնող պայմանները: Դա նորացված ԽՄԿԿ-ի (ամենևին չեմ բացառում նոր անվան հնարավորությունը) գոյության և հաջող գործունեության կարևորագույն նախապայմաններից մեկն է: Ընդ որում, այդ հոդվածը կվերացվի ուշ թե շուտ, այնքան էլ կարևոր չէ: Կարևոր է գիտակցել, որ այն խանգարում է բուն ԽՄԿԿ-ին, ավելի ճիշտ՝ նրա վերակառուցմանը:

Այդ հոդվածի մասին խոսելիս պետք է նկատի առնել մի կարևոր հանգամանք ևս: Մեր երկրում առայժմ գոնե չկա որևէ ուրիշ համամիութենական քաղաքական կազմակերպություն, որ կարողանար մրցակցել ԽՄԿԿ-ի հետ:

Երկրորդ նկատառումը բխում է այս իրողությունից: Ես խորհրդային ֆեդերացիայի պահպանման կողմնակից եմ: Բայց մեր կոնկրետ քաղաքական իրադրությունն այնպիսին է, որ ֆեդերացիայի գոյության կարևորագույն պայմաններից մեկը համամիութենական սոցիալիստական կուսակցության գոյությունն է: Իսկապես, այդ կուսակցությունը միայն կարող է լինել գոնե այսօրվա բարդ պայմաններում, ֆեդերացիայի մեջ մտնող հանրապետությունների և ժողովուրդներին համախմբողը: Այս հանգամանքը ևս թելադրում է ԽՄԿԿ-ի արմատական վերակառուցման անհրաժեշտությունը:

Բայց հենց ԽՍՀՄ-ի ֆեդերատիվ կառուցվածքը լրացուցիչ դժվարություններ է ստեղծում այն կուսակցության համար, որը այդ ֆեդերացիայի համախմբման կարևորագույն գործոններից մեկն է և իր բնույթով համամիութենական է:

Վերջին տարիներին հստակորեն գծագրվեց այն իրողությունը, որ ԽՍՀՄ-ում ազգային հարաբերությունները ամենևին էլ ներդաշնակ չեն, ավելին, բացվեցին լուրջ ու սպառնալից հակասություններ: Կուսակցությունը ինչպե՞ս պետք է արձագանքեր այդ հակասություններին: Ավելի ճիշտ, այս իրողությունը ինչպե՞ս պետք է հաշվի առնվի կուսակցության վերակառուցման ժամանակ:

Այս հարցին պատասխանելը ամենևին էլ հեշտ չէ: ԽՄԿԿ-ի ֆեդերալիզացիան բացառվում է, և կարծում եմ, ներկա պահին գոնե դա ճիշտ է, եթե ԽՍՀՄ-ը ուզում ենք պաշտպանել: Բայց համամիութենական կուսակցության ազգային ջոկատները պետք է դառնան իրենց ժողովուրդների ազգային շահերի արտահայտիչները: Այս անվիճելի է: Առանց դրա, հանրապետությունների կոմկուսները շատ արագ կկորցնեն ամեն մի ազդեցություն ժողովրդի վրա, պարզապես ավելորդ կդառնան:



Մենք պետք է հստակորեն մեզ հաշիվ տանք, որ ԽՄԿԿ-ի գործունեության մեջ ազգային խնդիրները չեն գրավել այն առաջնակարգ տեղը, որը այժմ նրանց տրվում է: Ինտերնացիոնալիզմի գաղափարները մի տեսակ աննկատելիորեն (կամ գուցե մտածված) վերածվել են վերազգայնության գաղափարների, ազգայինը միշտ ստորադասվել է դասակարգայինին: Պատահական չէ, որ մեզանում մինչև 50—60-ական թվականները պաշտոնական, կուսակցական մակարդակով հաստատվում էր այն դրույթը, որ կոմունիստական հասարակարգում ազգերը պետք է միաձուլվեն, և քանի որ այդ այդպես է, իսկ մենք էլ կոմունիզմ ենք կառուցում, ուրեմն ինչու՞ չարագացնել ազգերի միաձուլումը: Ինտերնացիոնալիզմ նշանակում է միջազգայնականություն, դաշինք ազգերի միջև: Վերազգայնականությունը նշանակում է քամահրական վերաբերմունք ազգերի հանդեպ: Մեր կուսակցության գործունեության մեջ, ըստ էության, հաղթեց այս վերջինը: Եվ, միանալով ռուսական կայսրության պետական ավանդույթների հետ, որոնք շատ ավելի կենսունակ դուրս եկան, քան սպասում էին առաջին սերունդների կոմունիստները, այն այնպիսի ավերներ գործեց ազգային հարաբերություններում, որ ամենամեծ ցանկության դեպքում անգամ դեռ շատ երկար ժամանակ կպահանջվի ազգային շատ թե քիչ նորմալ հարաբերությունները վերականգնելու համար:

Վերակառուցված ԽՄԿԿ-ն չի կարող վճռականորեն չհրաժարվել վերազգայնության բոլոր դրսևորումներից: Ուրեմն նրան կմնա փնտրել ամբողջ ֆեդերացիայի և նրա մեջ մտնող բոլոր ժողովուրդների, սոցիալիստական գաղափարների և կոնկրետ ազգային շահերի դիալեկտիկական զուգակցման ուղիները:

Ահա այս կոնտեքստում է բարձրանում Հայաստանի կոմկուսի հետագա ճակատագրի հարցը:

Ինձ համար կասկածից դուրս է, որ եթե զուտ քաղաքական հանգամանքները, ԽՍՀՄ-ի մեջ մեր տեղի հարցը մի կողմ թողնենք էլ (թեև այսօր մեզ համար գուցե հարցերի հարցը հենց դա է— մեր վերաբերմունքը խորհրդային ֆեդերացիայի հանդեպ), ապա հայ ժողովուրդը իր հանրապետության մեջ չի կարող չունենալ ուժեղ սոցիալիստական կուսակցություն: Հայկական սոցիալիստական շարժման ավանդներն իսկ թելադրում են այդպիսի կուսակցության գոյության անհրաժեշտությունը: Իսկ եթե գործին նայենք քաղաքական-պետական տեսանկյունից, ապա առանց այդպիսի կուսակցության, որը մասը լինի համամիութենական կուսակցության, մենք չենք կարող ապահովել մեր տեղը ֆեդերացիայում:

Ահա թե ինչու ՀԿԿ-ի վերակառուցման խնդիրը նեղ-կուսակցական հարցից վերաճում է համազգային խնդրի:

Իսկ վերակառուցման համար ՀԿԿ-ն նախ պետք է ճշմարիտ գնահատական տա հայ կոմունիստների գործունեությանը, եթե կուզեք, 20-րդ դարի սկզբից: Դա անհրաժեշտ է հաստատելու համար նախ, որ իսկական սոցիալիզմը չի կարող վերազգային լինել, և հայ կոմունիստների մի զգալի մասի այդպիսի համոզմունքները ճակատագրական եղան մեզ համար: Չեմ ուզում խորանալ այն բանի մեջ, թե ինչու վերազգայնությունը այնքան ուժեղ եղավ հենց հայ կոմունիստների մեջ— դա էլ երևի իր պատճառներն ունի: Բայց իրողությունն այն է, որ երբ այսօրվա հեռավորությունից նայում ենք մեր նախորդների գործունեությանը, մանավանդ 18—23 թթ., չենք կարող չտեսնել, որ Ղարաբաղի, Նախիջևանի և այլ կորուստները զգալի չափով պայմանավորված էին նրանց անհեռատես քաղաքականությամբ:

Նույն այդ քաղաքականության հետևանք էր և այն, որ հայ քաղաքական ուժերը չկարողացան միավորվել թուրքական վտանգը դիմագրավելու համար: Առավել ցավալին այսօր այն է, որ թուրքական զորքերի հարձակման պահին հայ բանակի շարքերում ագիտատորները դիրքերը լքելու կոչ էին անում: Նրանք կրկնում էին այն ուղին, որ բռնել էին բոլշևիկները առաջին համաշխարհային պատերազմի տարիներին: Բայց այն, ինչ կարող էր ճիշտ լինել ռուսական անսահման տարածություններում, կործանարար էր փոքրիկ, նորաստեղծ, թույլ հայկական հանրապետության համար:

Ես ամենևին հակված չեմ հայկական հանրապետության բոլոր դժբախտությունները բացատրել հայ կոմունիստների գրաված դիրքով: Դա նույնքան աններելի սխալ է, որքան ամեն ինչ դաշնակների սխալներով բացատրելը: Այս վերջինները, անկասկած, չափազանց ծանր եղան մեր երկրի համար: Եվ, ընդունելով

դաշնակցական կուսակցության ծառայությունները ազգային ազատագրական պայքարին, չպետք է մոռանալ նաև այդ սխալները: Մի կուսակցության պաշտամունքի փոխարեն չպետք է ստեղծվի մի ուրիշ կուսակցության պաշտամունք: Ցանկացած կուսակցության պաշտամունքը, ինչպես արդեն համոզվել ենք մեր փորձով, կործանարար է ոչ միայն տվյալ կուսակցության, այլև տվյալ ժողովրդի համար: Բայց հայկական կուսակցությունների գործունեության անկողմնակալ վերլուծության համար ՀԿԿ-ն պետք է սկսի իրենից: Այլ ճանապարհ չկա: Չանի այդ նա ինքը, կանեն ուրիշ ուժեր, գործը տանելով ոչ կոնստրուկտիվ, կործանարար ուղիով: Եվ արդեն դրա նշանները կան: ՀԿԿ-ն, մաքրելով ու նորից բարձրացնելով սոցիալիստական իդեալները, արմատականորեն վերակառուցվելով, պետք է ամենայն ազնվությամբ նայի իր անցած ուղուն, տա այդ ուղու իսկապես գիտական վերլուծությունը, առանց թաքցնելու ոչինչ, առանց ծայրահեղությունների մեջ ընկնելու: Արդեն վաղուց է, ինչ մեր առաջ ամբողջ սրությամբ բարձրանում են ևս երկու հարց, կապված հայ կոմունիստների գործունեության հետ՝ ի՞նչ էր մայիսյան ապստամբությունը մեր ազգային շահերի տեսանկյունից: Եվ ի՞նչը առաջ բերեց 1921 թ. փետրվարի այն դեպքերը, որ մենք անվանում ենք դաշնակների փետրվարյան ավանտյուրա, իսկ ուրիշները՝ փետրվարյան ժողովրդական ապստամբություն: Եվ այս երկու դեպքերի գնահատման մեջ էլ, կարծում եմ, միայն սև ու սպիտակ գույներին դիմելը նորից ու նորից պետք է աղավաղի ճշմարտությունը: Իսկ այդպիսի մոտեցումը այսօր զգալի է դառնում, միայն, ինչպես ասում են, հակառակ նշանով:

Այսինքն, ՀԿԿ-ն իր անցյալին ու ներկային պետք է նայի ոչ թե վերացական դասակարգային և ինտերնացիոնալիստական դիրքերից, այլ իր ժողովրդի պատմության կոնկրետ պայմանների դիրքերից, ինչպես սովորեցնում է մարքսիզմը: Մենք վաղուց արդեն մոռացել ենք, որ մարքսիզմը թելադրում էր դոգմաներ չճանաչել: Ոչ այլ ոք, քան հենց Մարքսն է ասել՝ ամեն ինչ ենթարկիր կասկածի: Սա քաղաքականության և առհասարակ ինտելեկտուալ գործունեության մեջ փրկարար սկզբունք է: Բայց 20-րդ դարի կոմունիստները առաջին հերթին հենց այս մոռացան, տրվելով դոկտրինաների ու դոգմաների իշխանությանը: ՀԿԿ-ն, ինչպես և իրենց մարքսիստական համարող մյուս կուսակցությունները, պետք է կարողանան ազատվել դոգմաների, մեկընդմիշտ տրված ճշմարտությունների իշխանությունից:

Այս կապակցությամբ մի երկու խոսք ՀԿԿ Կենտկոմի անցյալ տարվա սեպտեմբերյան պլենումի մասին: Կարելի է վստահությամբ ասել, որ այդ պլենումի զեկուցումն ու բանաձևը ՀԿԿ-ի պատմության մեջ մինչ այդ չտեսնված փաստաթղթեր էին: Դեռ երբեք Հայաստանի կոմկուսը այդ աստիճան երեսով չէր դարձել դեպի ազգային խնդիրները: Եվ թե ինչքան այդ փաստաթղթերում եղած դրույթները կարևոր էին մեր ժողովրդի համար, երևում է թեկուզ նրանից, որ այսպես կոչված ոչ-պաշտոնական կազմակերպություններից շատերը քարոզում էին, ըստ էության, նույն այդ դրույթները կամ գոնե դրանց մի մասը:

Բայց, իրատեսորեն նայելով դեպքերի հետագա զարգացմանը, պետք է ասենք, որ այդ փաստաթղթերը չկարողացան ինչպես հարկն է համախմբել ՀԿԿ-ն և ժողովրդին: Այդ նույն դրույթները, կրկնված ոչ պաշտոնական կազմակերպությունների կողմից, ավելի համոզիչ էին հնչում:

Պատճառներից մեկը տասնամյակների ընթացքում կուտակված անվստահությունն է կուսակցական ապարատի հանդեպ, որ պետք է տեսնել և գտնել այդ անվստահությունը վերացնելու ուղիները:

Մյուս պատճառն այն էր, որ սեպտեմբերյան պլենումի հիմնադրույթները մինչև փաստաթուղթ դառնալը, պետք է քննարկվեին սկզբնական կուսկազմակերպությունների շրջանային ու քաղաքային կուսկոմիտեների պլենումներում: Բայց այդպես չեղավ: Դա է պատճառը, որ կուսակցական տոմս ունեցողներից շատերը իրենց պատասխանատու չեն զգում դրանց կիրառման համար:

Եվ նորից վերադառնում ենք այն իրողությանը, որի մասին արդեն շատ խոսվեց՝ կուսակցություն ասելով հասկանում ենք կուսակցական ապարատը: Այնինչ այսօր իրավիճակն այնպիսին է, որ հրամայական անհրաժեշտություն է առաջացել ունենալ իսկապես համախմբված կուսակցություն: Լավ թե վատ, ՀԿԿ-ն



ունի քաղաքական փորձ, ունի որոշակի կառուցվածք, որի առավելություններից կարելի էր ավելի լավ օգտվել: Մեր ժողովրդի համար դժվարին այս պահին այդ կուսակցությունը (կրկնում եմ, կուսակցությունը և ոչ միայն ու ոչ այնքան նրա ապարատը) չի կարող, իրավունք չունի անգործության մատնվել: Մեր առջև կանգնած բազմաթիվ հարցերի տրվում են միամիտ, անստույգ, երբեմն պարզապես հրահրիչ և վտանգավոր պատասխաններ, և եթե ՀԿԿ-ի տեղը դատարկ մնա, այդ դատարկությունը անմիջապես կլցնեն ուրիշ կազմակերպություններ ու խմբեր:

ՀԿԿ-ն, իբրև քաղաքական կազմակերպություն, պետք է մշակի իր հստակ պատասխանները բոլոր առաջացող հարցերին:

Տարբեր տեսակետների միջև երկխոսությունը այսօր քաղաքական նորմալ կյանքի միակ ձևը կարող է լինել: Բայց, ինչքան էլ տարօրինակ է, մենք դարձյալ կորցնում ենք այդ երկխոսության հնարավորությունը, այս անգամ չփորձելով նոր առաջացած և առաջացող կազմակերպությունների տեսակետներին հակադրել կուսակցության տեսակետը: Հակադրել ոչ թե առաջինները մերժելու, այլ ճշմարիտ ուղին պարզելու համար, որտեղ պետք է սկզբունքային անզիջումություն, որտեղ պետք է փոխզիջման պատրաստակամություն հանդես բերելով:

Ինձ ուրախացնում է, որ ՀԿԿ-ի ղեկավարները վերջապես կարողացան «լեզու գտնել» ՀՀՇ-ի ղեկավարության հետ: Բայց դա երկխոսության մեկ և միանգամայն անբավարար մակարդակն է: Այդ համաձայնությունը կարևոր էր որոշակի պահի համար: Բայց դրանից հետո պետք է շարունակվեր բաց, կոռեկտ, քաղաքակիրթ վեճը՝ երկու տարբեր կազմակերպությունների վեճը: Հենց այդ վեճի մեջ պետք է ծնվեր ազգային այն ծրագիրը, որի մասին մենք այսօր այնքան շատ խոսում ենք և որի կարիքը իսկապես այնքան զգում է մեր ժողովուրդը:

Այնինչ այսօր ՀԿԿ-ի երկխոսությունը ՀՀՇ-ի հետ կուլուարային բանակցություններից այն կողմ չի անցնում: ՀՀՇ-ի մի շարք դեպքերում խորապես վիճելի (ոչ միայն ինձ, այլև շատ-շատերի համար) գաղափարներին մենք ոչինչ չենք հակադրում: Երբ ասում եմ ոչինչ, նկատի ունեմ միայն ու միայն գաղափարները, և ոչ թե վարչական միջոցները, որոնք հիմա աղետալի կարող են լինել: ՀՀՇ-ի գաղափարների «ջախջախումը», գաղափարների մերժման ձգտումը անցած տասնամյակների ամենատխուր, ամենաանընդունելի ժառանգություններից մեկն է: Ես խոսում եմ գաղափարների վեճի մասին, որը պետք է հնարավորություն տա գտնել տվյալ պահին ամենաճիշտ որոշումները:

Ահա այսպիսի երկխոսության հնարավորությունը մենք առայժմ չենք օգտագործում, ՀՀՇ-ի գաղափարական ակտիվությանը ոչինչ չհակադրելով:

Ինչքան ես կարողացա հասկանալ, հանրապետության և ՀԿԿ-ի ղեկավարները մտահոգված են այն բանով, որ ոչ-պաշտոնական կազմակերպությունները մեզանում չափազանց շատ են: Այստեղ էլ հստակություն է պետք, և այդ հստակությունը պետք է գար նախևառաջ ՀԿԿ-ից: Ինչու՞ ենք մենք սարսափում բազմաթիվ ոչ պաշտոնական կազմակերպությունների գոյությունից: Եթե նրանք ծնվել են և գոյատևում են, ուրեմն դրա անհրաժեշտությունը կա: Հենց որ որևէ կազմակերպություն կորցրեց իր ոտքի տակի հողը, նա ինքն իրեն կվերանա կամ կձուլվի մյուս կազմակերպություններին: Չի կարելի արհեստականորեն առավելությունը տալ մի կազմակերպության մյուսների հաշվին: Դա կնշանակի աղքատացնել այսօրվա հասարակական կյանքը, որի օգուտը միայն առերևութական է: Ինչու՞ գոյության իրավունք չունենան բոլոր այն կազմակերպությունները, որոնք գործում են եղած օրենքների շրջանակներում: Իսկական երկխոսությունը, տարբեր կարծիքների համադրմամբ, կարող է լինել միայն այս պայմաններում: Կարծում եմ, մեր ժողովրդի հոգսերն այսօր այնքան ակնհայտ են, որ, ինչքան էլ ծայրահեղ լինեն արտահայտված տեսակետները, ընդհանուր հայտարարը միշտ էլ կգտնվի: Բայց ՀԿԿ-ն այդ գործում ամենամեծ դերը պետք է խաղա իբրև ամենափորձված, ամենամեծ հնարավորությունները ունեցող և վերջապես իբրև կառավարող կուսակցությունը:

Այսպիսով, մենք վերադառնում ենք նրան, ինչից սկսել ենք. այս խնդիրները իրագործելու համար ՀԿԿ-ն պետք է կուսակցություն դառնա բառիս ճշգրիտ, դասական իմաստով, պետք է դառնա որոշակի գաղափարների շուրջ համախմբված, որոշակի ազգային ծրագիր ունեցող կազմակերպություն:

Շուտով տեղի են ունենալու Հայաստանի Գերագույն Խորհրդի և տեղական խորհուրդների ընտրությունները: Առաջին անգամ այդ խորհուրդներում ՀԿԿ-ն ընդդիմախոսներ կունենա: Ակնհայտ է, որ ՀՀՇ-ն և այլ կազմակերպություններ կպայքարեն մեր խորհրդարանում ավելի շատ տեղեր ունենալու համար, և դա միանգամայն բնական է: Անբնականն այն կլինի, եթե ՀԿԿ-ն անպատրաստ լինի այդ պայքարին, չկարողանա հասարակության մեջ, գործող ոչ պաշտոնական կազմակերպությունների մեջ դաշնակիցներ գտնել:

Բայց դրա համար անհրաժեշտ է ակտիվորեն, շատ ավելի ակտիվորեն ու արմատականորեն վերակառուցվել: Հարկավոր է դուրս գալ կաբինետներից, գտնել դեպի մարդիկ տանող ճանապարհները: Վերջին շրջանում կուսակցական մարմիններում վերակառուցումներ և կադրային փոփոխություններ շատ եղան: Բայց դժվարությամբ կարող ենք ասել, որ այդ փոփոխությունները ՀԿԿ-ն մոտեցրին ժողովրդին, կենդանի մարդկանց, այն նույն զանգվածներին, որոնց մասին ահա արդեն քանի տասնամյակ խոսել են կուսակցական առանձնասենյակներում ու փաստաթղթերում: Կուսակցական կոմիտեների քանի աշխատող այսօր կգտնվի մեզանում, որոնք կարող են աներկյուղ մտնել գործարանները, բուհերը, հիմնարկները, գյուղերը և մարդկանց հետ վիճել, համոզել, ընդունել իր սխալը, մի խոսքով անել այն, ինչ պարտավոր է անել ցանկացած մասշտաբի կուսակցական աշխատող: Մնացած բոլոր առավելությունները այս մեկի բացակայության դեպքում մարդուն պարզապես դրկում են քաղաքական գործիչ լինելու հնարավորությունից: Մինչդեռ առաջվա պես մեր կուսակցական մարմինները ձևավորելիս ավելի շատ փնտրում են լավ փաստաթղթեր կազմելու ընդունակ մարդկանց:

Ներկա պահին այլևս անհնար է խուսափել այս հարցերի քննարկումից: Առաջիկա ընտրությունները և կոնֆերանսներն ու համագումարները այլևս խուսանավելու տեղ չեն թողնում:

---

# Կ. ՄԱՐՔՍԸ ԵՎ ԱՇԽԱՏԱՆՔԻՑ ՕՏԱՐՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ

**Վ. ՄԻՐԶՈՅԱՆ**

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՄԱՆ ԼՈՒՅՍՈՎ ՄԵՐ ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ շատ հեռու է սոցիալիզմի մասին այն ավանդական պատկերացումներից, որ անցած տասնամյակների ընթացքում ստեղծվել են հասարակագետների աշխատություններում և պաշտոնական փաստաթղթերում: Իրականի և մտացածինի խզումը անժխտելի է ողջ հասարակության և նրա բոլոր ենթահամակարգերի առումով, սակայն առավել ցայտուն և ամենից ցավալի իրողություն է աշխատանքի ասպարեզում:

Իրոք, ի հեճուկս լճացման շրջանում լայնորեն տարածված պրոպագանդիստական դրույթների, աշխատանքն ամենևին էլ չի վերածվել խորհրդային մարդու առաջին կենսական պահանջմունքի: Ավելին, ցածր է աշխատանքի արտադրողականությունը, վիթխարի են նյութական կորուստները, հսկայական գումար են կազմում սպառող չգտնող արտադրանքը, չգործադրվող արտադրական կարողությունները: Խիստ թույլ է աշխատանքային կարգապահությունը, չի նվազում տրավմատիզմը, աճում են սոցիալիստական սեփականության հափշտակումները, ակնհայտորեն անարդյունավետ է աշխատանքային դաստիարակության ողջ համակարգը:

Քիչ է այս իրողությունը արձանագրելը, այն պետք է իմաստավորել, փորձել ըմբռնել խորհրդային հասարակության անցյալի, ներկայի և ապագայի տեսակետից: Ամենից առաջ պարզ է հետևյալը. տվյալ իրողությունը վկայում է այն, որ խորհրդային մարդը, որին տարիներ շարունակ փորձել են համոզել, որ ինքն է արտադրության միջոցների, իր ձեռնարկության, ողջ երկրի լիիրավ տերը, որ սոցիալիզմը աշխատանքի մարդկանց հասարակություն է և այլն, ահա նույն այդ մարդն իր վարքով դրսևորում է լիակատար անտարբերություն դեպի իր աշխատանքն ու աշխատանքի միջոցները, սոցիալիստական սեփականությունը, անտարբերություն և խոր հիասթափություն աշխատանքային բարոյականության նկատմամբ:

Ի՞նչ է կատարվում և ինչու՞: Որո՞նք են խորհրդային հասարակության ներկայիս ճգնաժամի արմատները: Ժամանակն է, կարծում եմ, հասկանալու, որ առանց տեսական վերլուծության, առանց անդրադառնալու մասնավորապես աշխատանքի օտարման մարքսյան հայեցակետին մենք չենք կարողանա պատասխանել այս հարցերին:

Այս առումով նախապես նկատենք հետևյալը: Մեր հասարակության բնականոն զարգացմանը խոչընդոտել է ոչ միայն աշխատանքի նկատմամբ բացասական վերաբերմունքը որպես զանգվածային երևույթ, այլև դրա գաղափարական-տեսական, իմաստավորման բացակայությունը: Մտածողության քարացածությունը, մարքսիստական դրույթների ոչ ճկուն կիրառությունը, հասարակագիտությանը պարտադրված գերլավատեսական եզրակացությունների շրջանակներն առհասարակ թույլ չէին տալիս անգամ զուտ տեսականորեն քննարկելու աշխատանքից օտարման հնարավորությունը սոցիալիզմի օրոք: Տեսական-աշխարհայացքային դիրքորոշումը էապես չէր տարբերվում երևույթի մեկնաբանումից ողջախոհության մակարդակում, այն է՝ ինչպե՞ս կարող է երկրի լիիրավ տերը, ազատ աշխատանքի սուբյեկտը, շա-

---

*ՄԻՐԶՈՅԱՆ ՎԱԼԵՐԻ ԱՐՄԵՆԱԿԻ— Հայաստանի ԳԱ փիլիսոփայության և իրավունքի ինստիտուտի ավագ գիտաշխատող, փիլիսոփայական գիտությունների թեկնածու:*

հագործումից զերծ մարդը օտարվել, խորթանալ իր աշխատանքից, սեփականությունից: Նման դիրքորոշումը, կրկնում եմ, թվում էր միանգամայն տրամաբանական: Հենց այդ թվացյալ հիմնավորվածության շնորհիվ էլ այն ամենը, ինչ չէր համարվում սոցիալիզմի մասին կայունացված պատկերացումներին, չէր ընդունվում որպես սոցիալական փաստ և կամ էլ ընկալվում էր որպես «մնացորդային օտարում», որն ըստ էության այլ բան չէր, քան չարաբաստիկ «կապիտալիզմի մնացուկ»:

Ներկայումս մեծ դժվարությամբ մեր փիլիսոփաները, տնտեսագետները, սոցիոլոգները, քաղաքական գործիչները աստիճանաբար հաշտվում են այն մտքի հետ, որ աշխատանքից օտարումը իրական սոցիալիզմի պայմաններում ոչ թե բուրժուական հեղինակների մոգոնած տեսական կառույց է կամ պրոպագանդիստական հնարանք, այլ սոցիալական իրողություն, որը պետք է ընդունել, հասկանալ, բացատրել դրա արմատները և ձևավորման մեխանիզմները, ինչպես նաև օտարման հաղթահարման ուղիները և միջոցները:

Կ. Մարքսը, ամփոփելով աշխատանքի օտարման դիտարկելի փաստերը, շատ պատկերավոր նկատել է. «Աշխատանքից օտարումը պարզորեն դրսևորվում է նրանում, որ հենց որ դադարում է աշխատանքի ֆիզիկական կամ այլ հարկադրանքը, աշխատանքից փախչում են, ինչպես ժանտախտից» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 42, стр. 91): Այն, որ խորհրդային քաղաքացին նույնպես աշխատանքից փախչում է, հեշտ է համոզվել անգամ թռուցիկ հայացք նետելով մեր աշխատանքային կյանքի վրա՝ պորտաբույծների ստվար բանակը, աշխատավայրում «գլուխ պահելու» ամենանրբահնար ձևերը, առավելագույնս երկարաձգված ընդմիջումները, կեղծ հիվանդաթերթիկները, պրոֆեսիոնալիզմի անկումը և այլն:

Ինչ վերաբերում է երևույթի տեսական ըմբռնմանը, ապա անհրաժեշտ է ասել հետևյալը: «Աշխատանքից օտարման» կատեգորիան մեծ տեղ է գրավում Կ. Մարքսի սոցիալ-փիլիսոփայական հետազոտություններում: Արդեն 1844 թ. «Տնտեսագիտական-փիլիսոփայական ձեռագրերում» նա ձևակերպում է աշխատանքից օտարման իր հայեցակետը որպես դասական քաղաքատնտեսության քննարկած, սակայն մինչև վերջ չլուծված մի շարք հանգուցային խնդիրների ըմբռնման յուրօրինակ փիլիսոփայական, մեթոդաբանական հիմք: Մինչմարքսյան տնտեսագետներն արդեն տվել էին աշխատանքի օտարման էմպիրիկ նկարագիրը, սակայն, ի վիճակի չլինելով բացատրել մասնավոր սեփականության դերը, չէին կարողացել իմաստավորել նաև աշխատանքից մարդու օտարման երևույթի սոցիալական հիմքերը: Կ. Մարքսը, հենվելով Հեգելի և Ֆոյերբախի դատողությունների վրա (միաժամանակ հաղթահարելով առաջինի իդեալիզմը և երկրորդի վերացական մարդաբանությունը), օտարումը դիտում է որպես միանգամայն կոնկրետ երևույթ՝ պայմանավորված որոշակի սոցիալ-տնտեսական հարաբերություններով: Նա ցույց է տալիս աշխատանքից օտարման երևույթի պատմական պայմանները, դրա անխուսափելիությունը, զարգացման փուլերը և հաղթահարման ուղիները: «Գերմանական գաղափարախոսության» մեջ և հատկապես «Կապիտալում» օտարումը մեկնաբանվում է որպես մարդկային գործունեության արդյունքների վերածում բուն իսկ գործող սուբյեկտի վրա իշխող, նրան խորթ մի ուժի: Աշխատանքի օտարման մեխանիզմը Կ. Մարքսը օգտագործել է բացատրելու համար ապրանքային ֆետիշիզմը, «փողի մոգական բնույթը», արտադրողների միջև փոխհարաբերությունների «իրային բնույթը», մարդկանց փոխադարձ խորթացումը և այլն:

Ի դեպ, ընդհանուր ձևով, հայրենական բոլոր հասարակագետները (նաև արևմըտյան շատ հեղինակներ) ընդունում են, որ հատկապես Կ. Մարքսն է աշխատանքի օտարման երևույթի հայտնագործողը: Սակայն կա զարմանալիորեն կենսունակ մի տեսակետ, թե իբր նա զբաղվել է աշխատանքի օտարման հարցերով լոկ իր վաղ շրջանի աշխատություններում, իսկ հետագայում այդ թեման եթե դուրս էլ չի մնացել լիովին նրա տեսադաշտից, ապա համենայնդեպս մղվել է հետին պլան, քանի որ իբր «աշխատանքի օտարում» մանվածապատ հասկացության փոխարեն Կ. Մարքսը սկսել է գործածել ավելի խիստ գիտական հասկացություններ՝ «աշխատանքի շահագործում», «հավելյալ արժեք», «կոնկրետ և վերացական աշխատանք» և այլն: Ըստ իս, այս հանգամանքը նույնպես մասամբ բացատրում է, թե ինչու ներկայումս մենք այսպես անպատրաստ եղանք ուսումնասիրելու աշխատանքից օտարման երևույթը սոցիալիզմի օրոք:

Նախ բուն այդ տեսակետի մասին: Անտարակույս, տվյալ թեման ո՛չ «Կապիտալի» և ո՛չ էլ Կ. Մարքսի ողջ ստեղծագործության կենտրոնական խնդիրը չէ,



Սակայն «Կապիտալում» նա ոչ միայն չի հրաժարվել դրանից, այլ է՛լ ավելի խորն ու համակողմանի է ուսումնասիրել ընդհանրապես օտարման և հատկապես աշխատանքի օտարման դրսևորումների ամբողջությունը: Թեմայի «նահանջը» հետին պլան սոսկ տերմինաբանական է, այնինչ բովանդակության առումով կարելի է ասել, որ «Կապիտալի» բոլոր հատորները, ինչպես նաև նախնական տարբերակները, բովանդակում են օտարված աշխատանքի մարքսյան հայեցակետի տնտեսագիտական և սոցիալ-հոգեբանական բազմակողմանի հիմնավորումը:

Օտարման երևույթի բացատրության ելակետն այն հանգամանքի ըմբռնումն է, որ սոցիալական որոշակի պայմաններում մարդկանց գործունեության արգասիքը վերածվում է ինչ-որ իրեղեն ուժի, որը «իշխում է մեզ վրա, դուրս է եկել մեր վերահսկողության տակից, հակառակ է գնում մեր սպասումներին և ի չիք է դարձնում մեր նկատառումները» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր** երեք հատորով, հ. 1, Երևան, 1972, էջ 34): Մարդկանց միավորման ուժը հանդես է գալիս որպես ոչ թե նրանց սեփական, այլ խորթ և անկախ գործող մի ուժ: «... Մարդու սեփական գործունեությունը նրա համար դառնում է օտար, իրեն հակադիր ուժ, որը ճնշում է նրան, փոխանակ ինքը իշխելու նրա վրա» (Նույն տեղը, էջ 33):

Ինչի՞ հետևանք է այս երևույթը: Բանն այն է, որ աշխատանքն իրենից ներկայացնում է առարկայացման պրոցես, երբ աշխատանքի սուբյեկտի նպատակները, ունակությունները, գործողությունները մարմնավորվում, առարկայանում են աշխատանքի արդյունքի մեջ: Առարկայացումը դեռ օտարացում չէ. վճռորոշը սոցիալական պայմաններն են: Աշխատանքի շահագործման հետևանքով է, որ աշխատողը վերաբերվում է իր աշխատանքի արդյունքին, բուն իսկ աշխատանքի ընթացքին և առհասարակ իր աշխատանքային կյանքին որպես իրեն խորթ և իր վրա իշխող ուժերի: Կապիտալիստական արտադրության շրջանակներում, ինչպես բացահայտել է Կ. Մարքսը, փաստորեն ոչ թե բանվորն է օգտագործում արտադրության միջոցները, այլ վերջիններս են օգտագործում նրան հանուն հավելյալ արժեքի արտադրության: Օտարվելով աշխատանքի արդյունքներից՝ շահագործվող սուբյեկտը օտարվում է նաև սեփական գործունեությունից, հարաբերվում է բուն այդ աշխատանքին որպես իրեն չպատկանող, իրենից չկախված և իր իսկ դեմ ուղղված զբաղմունքի: Բուն գործունեությունից օտարումը, ի տարբերություն արդյունքից օտարման, Կ. Մարքսը անվանում է նաև ինքնօտարում, քանի որ մարդն օտարվում է իր առավել բնութագրական հատկանիշից՝ աշխատանքից, արտադրությունից, արարումից: Մարդու համար աշխատանքը հանդես է գալիս «որպես **արտաքին**, նրա էությանը չպատկանող մի բան», օտար, հարկադիր, ատելի, տանջալից մի զբաղմունք զուտ հանուն վաստակի (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 42, стр. 27—28, 36—37, 90): «Դա **հարկադիր աշխատանք** է: Դա ոչ թե աշխատանքի նկատմամբ պահանջմունքի բավարարում է, այլ միայն **միջոց** ամեն տեսակի այլ պահանջմունքների բավարարման համար, բայց ոչ աշխատանքի պահանջմունքի» (Նույն տեղը, էջ 90—91):

Այստեղից էլ՝ օբյեկտիվ օտարման հոգեբանական ընկալումը վարձու բանվորի կողմից, որը ճիշտ է նկարագրել դեռևս Ա. Սմիթը աշխատանքի «զոհաբերության» իր հայեցակետի շրջանակներում (չկարողանալով սակայն տալ դրա սոցիալական պատճառների սպառիչ բացատրությունը): Մարքսը նույնպես շատ պատկերավոր նկարագրում է, որ իր աշխատուժը արտադրամիջոցների տիրոջը վաճառած մարդը զգում է ասես սեփական կաշին է վաճառել, «ուստի և ապագայի ոչ մի հեռանկար չի տեսնում, բացի մի հեռանկարից, որ այդ կաշին դաբաղելու են» (Կ. Մարքս, **Կապիտալ**, հ. 1, էջ 187): Օտարված աշխատանքի սուբյեկտի համար շրջված, այլափոխված են բոլոր բնականոն հարաբերությունները, մարդկային պահանջմունքները, իմաստազրկված է բուն աշխատանքը՝ որպես կոնկրետ գործողությունների ամբողջություն, որպես սեփական կարողությունների դրսևորման և ծավալման ասպարեզ, որպես իր հոգևոր ու ֆիզիկական կարողությունների խաղ և անգամ որպես կոնկրետ արդյունքի արտադրություն: «Նա աշխատում է ապրելու համար: Նա աշխատանքը նույնիսկ չի համարում իր կյանքի մի մասը, ընդհակառակը, նրա համար աշխատել նշանակում է զոհել իր կյանքը... Աշխատանքի իմաստը նրա համար այն չէ, որ նա գործում է, մանում, շաղափում և այլն, այլ այն, որ դա **վաստակելու** եղանակ է, որը նրան հնարավորություն է տալիս ճաշելու, պանդոկ գնալու, քնելու» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր**, երեք հատորով, հ. 1, էջ 201, 202):

Սահմանափակվելով աշխատանքից օտարման մարքսյան հայեցակետի այս սեղմ նկարագրով՝ ինքներս մեզ հարց տանք. իսկ մի՞թե աշխատանքի նկատմամբ ժամանակակից խորհրդային քաղաքացու վերաբերմունքն այլ բան չէ, քան ամենախնական օտարում: Սոցիոլոգիական հետազոտությունները ցույց են տալիս, որ աշխատողների երկու երրորդը չի կարողանում և չի էլ ցանկանում լիովին ներդնել իր աշխատանքային ունակությունները: Երիտասարդ աշխատողների կեսից ավելին ամեն կերպ խուսափում է արտադրության կառավարմանը որևէ մասնակցությունից, (այլ կերպ ասած՝ ընդհանուր գործերի վիճակի համար անձնական պատասխանատվությունից), երկու երրորդը միանգամայն հանդուրժում է աշխատանքային կարգապահության խախտումներն իրենց ձեռնարկությունում: Ակնհայտորեն ուժեղացել է աշխատանքի, մասնագիտության ընտրության հարցում ծայրահեղ պրագմատիկական, օգտապաշտական դիրքորոշումը, խորացել է երիտասարդության հեդոնիստական հակվածությունը դեպի ժամանցը, հաճույքը, վայելքը՝ ի հակակշիռ աշխատանքի: Մեր պայմաններում աշխատանքից օտարման իրողության անհերքելի ապացույց է այն, որ, ինչպես վկայում են հետազոտությունները և նաև առօրյա կյանքի դիտարկելի փաստերը, ժամանակակից խորհրդային մարդը հոգեբանորեն անջրպետել և ուղղակիորեն միմյանց է հակադրել աշխատանքը և արտաաշխատանքային կեցությունը՝ առաջինը հարկադիր, պարտադիր, անցանկալի զբաղմունքի ոլորտն է, որի միակ արդարացումը վարձատրությունն է, իսկ երկրորդը, ընդհակառակը, մարդկային կյանքի ճշմարիտ իմաստն է:

Դժվար չէ հասկանալ, որ սոցիալիզմի օրոք աշխատանքի օտարման արմատների բացատրությունը տալիս չի կարելի սահմանափակվել լոկ հոգեբանական և բարոյական երևույթների քննարկումով: Աշխատանքից օտարված մարդու հոգեբանությունն ու բարոյականությունը վերջին հաշվով արտացոլում են նրա սոցիալական վիճակը: Քաղաքացու արժանապատվության բացակայությունը հանգեցնում է պրոֆեսիոնալիզմի անկման և զուտ մարդկային արժանապատվության էրոզիայի. դեմոկրատիայի սահմանափակումները մղում են դեպի նեղ անձնական կյանքում պարփակվելուն, օտարացնում են հասարակական ակտիվությունից. արտադրամիջոցների տնօրինության հնարավորության բացակայությունը բերում է անտարբերություն հանրային սեփականության նկատմամբ. աշխատանքային ցածր կարգապահություն, իրական կյանքում որևէ բան փոխելու անկարողությունը անխուսափելիորեն ծնունդ է տալիս աշխատանքի անիմաստության և ունայնության զգացումի, բուն իսկ աշխատանքի ընկալման որպես անցանկալի, հարկադիր զբաղմունքի, ամենախնական «զոհաբերության»:

Ներկայումս մենք գործ ունենք սոցիալական օտարման զանազան ձևերի հետ՝ քաղաքական, գաղափարական, կրոնական, բարոյական, հոգեբանական և այլն: Կ. Մարքսը ժամանակին ցույց է տվել օտարման բոլոր տեսակների ածանցյալ լինելը աշխատանքի օտարումից. «... Մարդկության կապանքներն ընդհանուր առմամբ բխում են արտադրության նկատմամբ աշխատողի հարաբերությունից և բոլոր մյուս կապանքներն այդ հարաբերության հետևանքն ու ձևափոխումներն են» (К. Маркс, Ф. Энгельс. Соч., т. 42, стр. 98): Մեր հասարակության ներկա կապանքները նույնպես՝ վարչահրամայական ապարատը, հանցագործությունների աճը, կրոնական աղանդների տարածումը, ամուսնալուծությունները, ինքնասպանությունները, հարբեցողությունը, անհիմն դաժանությունը և այլն, մեզ մինչև վերջ անհասկանալի կմնան, եթե չտեսնենք դրանց հիմքերի հիմքը՝ աշխատանքի օտարումը:

Աշխատանքից խորհրդային մարդու օտարումը անհրաժեշտ է դիտել այն երևույթների շրջանակում, որոնք գրականության մեջ ստացել են «արգելակման մեխանիզմ» անվանումը: Այս հասկացությունը, որն առաջին անգամ գործածվել է ԽՄԿԿ Կենտկոմի 1987 թ. հունվարյան պլենումում, բնորոշում է այն բոլոր երևույթներն ու պրոցեսները, որոնք խոչընդոտում են հասարակության առաջընթաց զարգացումը: Դրանք են՝ բյուրոկրատիայի ինքնիշխանությունը, արտադրողների մենաշնորհային դիրքը և ուղղակի դիկտատը սպառողների նկատմամբ, անաշխատ եկամուտները, կադրային քաղաքականության սխալները, գիտության քաղաքականացումը, ստվերային էկոնոմիկան, կաշառակերությունը և այլն:

Սոցիալիզմի օրոք աշխատանքի նկատմամբ բացասական երևույթների պատճառների նախկին բացատրություններում տիրապետել է տեխնոլոգիական գործոնի շեշտադրումը: Նույնիսկ գործածության մեջ էր դրված «երկու օտարումների» վար-



կածը՝ սոցիալական և տեխնոլոգիական օտարում: Համարվում էր, որ առաջին տեսակը սոցիալիզմի օրոք վերացված է, քանի որ չկա աշխատանքի շահագործում, իսկ երկրորդը դեռ պահպանվում է, քանի որ հասարակությունը առայժմ ի վիճակի չէ իր բոլոր անդամներին անխտիր ապահովել բովանդակալից, ստեղծագործական աշխատանքով: Նման մոտեցման դեպքում օտարումը որպես սոցիալական երևույթ մերժվում էր, այնուամենայնիվ, դրականն այն է, որ տեսականորեն ընդունվում էր օտարման առկայությունը սոցիալիզմի պայմաններում: Մյուս դիրքորոշումը շեշտադրում էր երևույթի հոգեբանական կողմը՝ աշխատանքի սուբյեկտի ճնշվածության զգացումը, անտարբերությունը աշխատանքի նկատմամբ, եռանդի ու խանդավառության պակասը և այլն: Գերագնահատելով հոգեբանական գործոնների դերը՝ կամա թե ակամա ստվերի տակ էին թողնվում օտարման սոցիալական պատճառները, ուստի և դյուրին էր դառնում բուն այդ երևույթը բխեցնել երկրորդական, ածանցյալ պատճառներից՝ հոգեբանության իներցիայից, դաստիարակչական աշխատանքների թերություններից, մանրսեփականատիրական բարոյականության վերապրուկներից, բուրժուական պրոպագանդայի ներազդեցությունից և այլն:

Դժվար չէ հասկանալ, որ քննարկվող երևույթի բացատրությունը պիտի սկսել մի շարք ելակետային հասկացությունների հստակ պարզաբանումից՝ «հանրային սեփականություն», «մասնավոր սեփականություն», «կոլեկտիվ սեփականություն» և այլն: Մինչդեռ, մեծ չափազանցություն չի լինի ասել, որ ծանր ճգնաժամը կաթվածահար է արել մարքսիստական քաղաքատնտեսությունը, փիլիսոփայությունը, սոցիոլոգիան... Ո՞վ է սոցիալիզմի օրոք արտադրամիջոցների իսկական տերը: Եթե ձեռնարկության աշխատողներն օտարված են սեփականությունից (իսկ նրանց վարքը ուրիշ ոչ մի բացատրության տեղ չի թողնում), ապա ո՞վ է ձեռնարկության տերը՝ ադմինիստրացիա՞ն, մինիստրությու՞նը, բյուրոկրատնե՞րը, պետությու՞նը, թե՞ մեկ ուրիշը... Խոսքը, հասկանալի է, փաստացի սեփականատիրության, այլ ոչ դեկլարատիվ-իրավականի մասին է: Ասենք, տնտեսագիտական, սոցիոլոգիական խառնաշփոթը վկայում է այն մասին, որ հարցի իրավական կողմը ևս բոլորովին հստակ չէ: Ավելին, տնտեսական կյանքի ռեֆորմի ընթացքը, ձեռնարկությունների վերածումը իրավական ինքնուրույն սուբյեկտների պարզորոշ ցույց է տալիս, որ հատկապես օրենսդրական հարցերն առավել արմատական վերափոխման կարիք ունեն:

Առնվազն միամտություն է Կ. Մարքսին մեղադրել ներկայիս տեսական ճգնաժամի համար: Հիշեցնենք Վ. Ի. Լենինի խոսքերը. «Մենք չենք հավակնում, որ Մարքսը կամ մարքսիստները գիտեն դեպի սոցիալիզմ տանող ուղին ամենայն կոնկրետությամբ: Դա անհեթեթություն է» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 34, էջ 146): Այդ կոնկրետությունը ձևավորվում է մարդկանց ինքնուրույն գործունեությամբ, և հենց «միլիոնների փորձը», ինչպես կրկնում էր Վ. Ի. Լենինը, կտա ճիշտ պատասխանը: Ապագա հասարակարգը Մարքսը պատկերացնում էր որպես «ազատ մարդկանց միություն, որոնք աշխատում են արտադրության ընդհանուր միջոցներով և իրենց անհատական աշխատուժերը պլանաչափորեն ծախսում են որպես մեկ հասարակական աշխատուժ» (Կ. Մարքս, **Կապիտալ**, հ. 1, էջ 86): Նա պատկերացնում էր աշխատանքի ազատագրումը իբրև ամենից առաջ աշխատանքից օտարվածության հաղթահարում, աշխատողի և նրա աշխատանքի միջոցների տնտեսական որևէ հակադրության բացակայություն. «Մարդկանց հասարակական հարաբերություններն իրենց աշխատանքների ու իրենց աշխատանքի արդյունքների նկատմամբ այստեղ հստակորեն պարզ են մնում ինչպես արտադրության, այնպես էլ բաշխման մեջ» (Նույն տեղը, էջ 87): Այլ կերպ ասած, Կ. Մարքսը չի նախատեսել աշխատանքից օտարումը այնտեղ, որտեղ պիտի որ բացառվեր նաև աշխատանքի շահագործումը:

Մի՞թե կարելի է մեղադրել Մարքսին իրական սոցիալիզմի ձևախեղումների համար: Դառը ճշմարտությունն այն է, որ հետլենինյան շրջանում ոչ միայն խեղվեց սոցիալիզմը, այլև աղավաղվեց մարքսիզմը: Ի թիվս այլ երևույթների՝ մարքս-լենինյան ուսմունքը ներկայացվեց ու մեկնաբանվեց դրա ստալինյան նենգափոխումներով, որոնք առ այսօր իրենց զգացնել են տալիս: Այս առումով, խորհրդային հասարակության վերակառուցում՝ նշանակում է սոցիալիզմի ստալինյան մոդելի փոխարինում լենինյան մոդելով՝ դրա քաղաքական, տնտեսական, հոգևոր և մյուս հատկանիշներով հանդերձ:

Ո՞րն է առավել էականը մեր խնդրո առարկայի տեսակետից: Դա այն իրողությունն է, որ սոցիալիզմի բյուրոկրատական խեղաթյուրումների հետևանքով մեզանում փաստացի իշխանությունը, ուստի և տնտեսատիրոջ ռեալ հնարավորությունները, կենտրոնացվել են կուսակցական-պետական վերնախավի ձեռքին, որը սակայն հանդես է եկել բանվոր դասակարգի և ողջ ժողովրդի անունից: Ժամանակին, քննարկելով Փարիզյան կոմունայի փորձը, Կ. Մարքսը դրվատանքով է խոսել կոմունայի այն քայլերի մասին, որոնք ուղղված էին «դասակարգային իշխանության կառավարչական բռնատիրման մշտական վտանգի» դիմակայմանը (տե՛ս К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 548): Վ. Ի. Լենինը նույնպես, քննարկելով արհեստակցական միությունների դերի հարցը, հատկապես շեշտել է, որ «պետք է կարողանալ պետական իշխանության միջոցառումներն օգտագործել գլխովին միավորված պրոլետարիատի նյութական ու հոգևոր շահերն այդ պետական իշխանությունից պաշտպանելու համար» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 42, էջ 258): Այդպես, ավաղ, չեղավ: Եվ ոչ միայն արհմիությունները, այլև ժողովրդական հսկողության մյուս միջոցները (դեմոկրատական ընտրություններ, ազատ մամուլ, բազմակուսակցականություն և այլն) փաստորեն չգործեցին մեր երկրում կամ էլ ընդգրկվեցին նույն վարչահրամայական համակարգի մեջ:

Մի խոսքով, սոցիալիստական պետությունը, որ պիտի ծառայեր ժողովրդին, որպես նոր հասարակության կառուցման գործուն միջոց, ըստ էության ուռճացավ-զարգացավ իր մեկ գործառույթի ուղղությամբ՝ իբրև ճնշման կազմակերպված ապարատ:

Ծայրահեղ գերկենտրոնացումը անխուսափելիորեն զուգակցվել է գերգաղափարականացմամբ, որի հետևանքով տեսության մեջ նույնպես տեղի է ունեցել պետության նույնացում ողջ հասարակության հետ, իսկ սոցիալիստական սեփականությունը ներկայացվել է գերազանցապես պետական սեփականության տեսքով: Ճիշտ է, ընդունվում էր կոլեկտիվ-կոլտնտեսային սեփականության ձևը, սակայն դրան էլ երկար կյանք չէր սահմանված. այն փաստորեն նույնպես պետականանում էր՝ կոլտնտեսությունները արագորեն արտամղվում էին խորհտնտեսություններով, այդ կերպ ամրապնդելով սոցիալիզմի օրոք սեփականության երկու ձևերի մերձեցման դրույթը: Ներկայումս գիտական գրականության մեջ աստիճանաբար տիրապետող է դառնում այն տեսակետը, որ համաժողովրդական (հանրային, սոցիալիստական) սեփականության նույնացումը դրա լոկ մեկ կոնկրետ ձևի՝ պետական սեփականության հետ, ի վերջո պատճառ է դարձել աշխատավորության օտարման աշխատանքից, սեփականությունից և իշխանությունից:

Մեր քաղաքական համակարգի կառուցվածքը, որն արդեն առիթ է եղել բնութագրելու որպես «տարածքային ֆեոդալիզմ» (տե՛ս «Լենինյան ուղիով», 1988, № 6, էջ 50), արտացոլում է ուրիշի աշխատանքի շահագործման մեխանիզմը: Իրոք, կենտրոնի և ծայրամասերի, գերատեսչության և ձեռնարկության, վերադասի և ստորադասի, ղեկավարի և ենթակայի միջև առկա արտադրահարաբերությունների շրջանակներում առաջինները փաստացի հնարավորություն ունեն շահագործելու երկրորդների աշխատանքը: Կառավարման գերկենտրոնացման հետևանքով աշխատավորության գերակշիռ մասը դուրս է մնացել սեփականատիրության հարաբերություններից, ինչպես որ դուրս է մնացել քաղաքականության ասպարեզից: Աշխատանքի անմիջական սուբյեկտը զրկվել է տնտեսական և իրավական ինքնուրույնությունից: Ահա թե ինչու գյուղացին օտարված է հողից, բանվորը՝ իր ձեռնարկությունից: Տիրոջ զգացողություն չի կարող առաջանալ այնտեղ, որտեղ չկա տեր լինելու իրողություն: Խոսքերով ու հորդորներով ոչինչ չի փոխվի, քանի դեռ իրական կյանքում, բուն արտադրահարաբերություններում ոչինչ չի փոխվել: Լոկ իրավաբանորեն ինքնուրույն և տնտեսապես լիիրավ տերը կարող է ունենալ տիրոջ հոգեբանություն և տնտեսատիրոջ գործելակերպ:

Տեսության առումով կարևոր է գիտակցել այն, որ մենք իրական կյանքում թերագնահատել ենք ինչպես մասնավոր, այնպես էլ հանրային սեփականության բազմազանության մարքսյան ըմբռնումը: Ինչպես որ «մասնավոր սեփականության անթիվ երանգների» (Կ. Մարքս, **Կապիտալ**, հ. 1, էջ 794) գաղափարը մոռացության տալով, այն հանգեցրել ենք լոկ վարձու աշխատանքին, նույն կերպ և սոցիալիստա-



կան սեփականությունը պատկերել ենք գերազանցապես պետական սեփականության տեսքով: Վերակառուցման ոգին պահանջում է վերհանել և ակտիվացնել սոցիալիստական սեփականության անթիվ երանգները:

Խոսքը տվյալ դեպքում ոչ թե պետության դերի անարխիստական ժխտման մասին է կամ պետական սեկտորի վերացման մասին առհասարակ: Կան, իրոք, արևմտյան որոշ հեղինակներ, ովքեր օտարումը կապում են պետության գոյության հետ, ուստի և օտարման հաղթահարումը բխեցնում են պետության պարտադիր վերացման նախապայմանից: Սա ծայրահեղ ձախ դիրքորոշում է, որն իր մեջ կոնստրուկտիվ տարրեր չունի: Թե կապիտալիստական և թե սոցիալիստական երկրներում միևնույն քաղաքական կառուցվածքը դրսևորվում է զանազան պետական ռեժիմների տեսքով, պետության գործառույթների տարբեր ծավալով: Այնպես որ, խոսք կարող է լինել միայն սոցիալիստական պետության գործառույթների վերակառուցման, հասարակության խելամիտ ապապետականացման մասին:

Ապակենտրոնացում չի նշանակում անիշխանություն: Ապակենտրոնացումն անհրաժեշտ է այնքանով, որքանով այն հասարակական վերահսկողության տակ է դնում պաշտոնատար անձանց գործունեությունը, արգելակում է պետական շահերի նույնացումը բյուրոկրատական վերնախավի շահերի հետ, բացառում վերադաս օղակների հնարավորությունը՝ շահագործելու ստորադասներին, օտարացնելու նրանց աշխատանքից: Ապակենտրոնացումը հնարավորություն կտա սեփականատիրական հարաբերությունների ոլորտ ներգրավել բազմամիլիոն աշխատավորների, վերականգնելով այդ կերպ տնտեսատիրոջ հոգեբանությունը, խթանելով նրանց շահագրգիռ վերաբերմունքը, պատասխանատվությունը, եռանդը և ձեռներեցությունը:

Կառավարման քաղաքական և տնտեսական ապակենտրոնացումը վերակառուցման ամենահեղափոխական քայլերից է, և այն կարելի է բնորոշել նույն խոսքերով, ինչ որ Կ. Մարքսը ասել է Փարիզյան կոմունայի կապակցությամբ՝ «պետական իշխանության հակադարձ կլանում հասարակության կողմից» (К. Маркс, Ф. Энгельс, Соч., т. 17, стр. 548): Կրկնում եմ, մեզանում այնպես է ստացվել, որ պետությունը հանդես է եկել որպես տնտեսական գործունեության միակ սուբյեկտ: Մինչդեռ անհրաժեշտ է այդպիսիք դարձնել աշխատավորական կոլեկտիվներին՝ նրանց օժտելով տնտեսատիրոջ բոլոր իրավունքներով, ապահովելով ամենալայն ինքնուրույնություն, դնելով ինքնակառավարման իրական պայմանների մեջ:

Փարիզյան կոմունան որպես այդպիսին «հայտնագործված այն քաղաքական ձևն էր, որի ժամանակ կարող էր կատարվել աշխատանքի տնտեսական ազատագրությունը» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, **Ընտիր երկեր** երեք հատորով, հ. 2, Երևան, 1973, էջ 298): Ներկայումս նույնպես «վերևից» կատարվող քաղաքական բարեփոխումները պետք է ուղղվեն աշխատանքի անմիջական սուբյեկտին բոլոր տեսակի պետական-բյուրոկրատական կապանքներից ազատելուն: Բոլոր մակարդակի խորհուրդների իշխանության և հեղինակության վերականգնումը, հատկապես տեղական խորհուրդների գործունեության ձերբազատումը արտաքին մանրախույզ վերահսկումից, այլ կերպ ասած, Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության հայտնագործած «քաղաքական ձևի» լիարժեք օգտագործումը մեզ հնարավորություն կտա ապահովելու աշխատանքի տնտեսական ազատագրում, աշխատավորի օտարման հաղթահարում:

Այսպիսով, «ավելի շատ սոցիալիզմ» կարող է նշանակել միայն մի բան՝ սոցիալիստական սեփականության ձևերի բազմազանություն, տնտեսական պլյուրալիզմ, որոնց հիմքում ընկած է սեփական աշխատանքը: Սեփականության տեր մնում է ժողովուրդը, այնպես որ կապիտալիզմի վերականգնման մտավախությունը լուրջ հիմք չունի (սա չի նշանակում, թե չպետք է մտածել մոնոպոլիստական նկրտումների սահմանափակման միջոցների մասին): Իրողությունն այն է, որ պետական սեփականությունն իր ներկա տեսքով սպառել է իրեն, արդյունավետ չէ, նպաստում է աշխատավորի օտարմանն իր աշխատանքից: Այնպես որ, պետության կողմից տնտեսատիրոջ իր մենաշնորհից հրաժարումը, սեփականության տնօրինման, ուրեմն՝ տնտեսավարման իրավունքի հանձնումը այլ սուբյեկտների (ձեռնարկության կոլեկտիվին, կոոպերատիվին, ընտանիքին, անհատ արտադրողին և այլն) միանգամայն հիմնավորված է առկա արտադրամիջոցների ավելի արդյունավետ գործադրման տեսակետից: Ի վերջո, հենց տնտեսական (որի հիման վրա նաև՝ սոցիա-

լական) արդյունավետության վերելքն է ներկայումս իրագործվող տնտեսական ռեֆորմների, իրավական և քաղաքական համակարգերի բարեփոխումների հիմնական նպատակը:

Աշխատանքի օտարման երևույթի հաղթահարումը չի հանգում, անշուշտ, սեփականության հարցին: Այստեղ անհրաժեշտ է քաղաքական, տնտեսական, կազմակերպական, բարոյական, հոգեբանական վերափոխումների մեծ համալիր: Այնուամենայնիվ, առավել էականը վերը քննարկված հարցն է: Սեփականության խնդրի ճիշտ լուծումը անհրաժեշտ սոցիալական հող կստեղծի աշխատանքից և սեփականությունից խորհրդային մարդու օտարվածության հաղթահարման, հասարակության իրական դեմոկրատացման, բարոյական առողջացման, հոգևոր վերելքի համար: Գերնպատակն այն է, որ աշխատողի և սեփականության միջև վերացվեն այն բոլոր միջանկյալ օղակները, որոնք նրան օտարացրել են թե՛ սեփականությունից, թե՛ իշխանությունից և թե աշխատանքից:

Չի կարելի բնավ սպասել, թե աշխատանքի օտարումը դյուրին է հաղթահարվելու: Բազմաթիվ արգելակներ և սոցիալական ուժեր խոչընդոտելու են այդ ընթացքը: Աշխատանքից աշխատողի օտարման իսպառ վերացման գլխավոր երաշխիքը ուրիշի աշխատանքի շահագործման բոլոր հնարավոր ձևերի բացառումն է՝ դրան նպատակամղելով անհրաժեշտ սոցիալական, իրավական, քաղաքական և տնտեսական վերափոխումները: Վերակառուցումը իրական հնարավորություն է ընձեռում, ի թիվս սոցիալիզմի այլ ձևախախտումների մերջնական հաղթահարման, վերացնելու նաև սոցիալիզմի օրոք աշխատանքի օտարման օբյեկտիվ հիմքերը: Իսկ թե ինչպես կօգտագործվեն ստեղծված հնարավորությունները, ի վերջո կախված է վերակառուցումն իրականացնող մարդկանց հասատատակամությունից ու բանիմացությունից:

---



# ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԵՎ ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԱԿՏԻՎՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ԶԱՐԳԱՐՅԱՆ

ՍԿԶԲՆԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ գործունեության բովանդակության, աշխատանքի ոճի, ձևերի ու մեթոդների վերակառուցումը կարևորագույն քաղաքական խնդիր է: Թե ինչպես նա կկարողանա կյանքի կոչել նախանշված նոր քաղաքականությունը, այդպիսին էլ կլինի կուսակցության հեղինակությունը աշխատավորական կոլեկտիվում, այդպես էլ կորոշվեն վերակառուցման հեռանկարները: Այդ առումով կարևոր է սկզբնական կուսկազմակերպության ակտիվության ըստ ամենայնի բարձրացումը: Միայն ակտիվություն և նախաձեռնություն դրսևորող կազմակերպությունը կարող է զգալ ժամանակի, կյանքի զարկերակը, կանգնել մասսաների գլուխ, նրանց տանել իր հետևից, նպաստել կոլեկտիվի առջև ծառացած սոցիալ-տնտեսական խնդիրների անվերապահ և արագ լուծմանը, այլ խոսքով, վերակառուցել իր ողջ գործունեությունը:

Ասածը հիմնավորելու շատ օրինակներ կարելի է վկայակոչել մեր շրջանի հիմնարկ-ձեռնարկությունների ու տնտեսությունների, նրանց սկզբնական կուսկազմակերպությունների կյանքից: Թերևս այդ առնչությամբ բնորոշ է Զառի կոլտընտեսությունը, որի նախագահն է նորի և առաջավորի ջատագով, կոմունիստ Ս. Ախոյանը: Նախ ասեմ, որ այս տնտեսությունը լուրջ քայլեր է անում գյուղատընտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու ճանապարհին, կայունացնում իր ֆինանսական վիճակը և ամրապնդում նյութական բազան: Բավական է ասել, որ 1988 թ. տնտեսության դրամական եկամուտը կազմեց 1,3 միլիոն, իսկ արտապլանային օգուտը՝ 322 հազար ռուբլի: Անցած տարի ակնկալվում էր 1,5 մլն ռուբլու դրամական եկամուտ և ավելի շատ օգուտ: Նախորդ տարվա համեմատությամբ նկատելիորեն աճել է կաթի, մսի, բրդի արտադրությունը:

Թվարկած հաջողությունների մեջ իր արժանի ներդրումն ունի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Է. Բաբախանյան): Այստեղ կուսժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկվում են հանրային արտադրության զարգացմանը վերաբերող հարցեր, ապահովվում է կուսկազմակերպության և կոլվարչության սերտ համագործակցությունը, որը դառնում է առաջընթացի երաշխիք: Այսպես, կուսբյուրոյի որոշմամբ 1988 թ. տնտեսության երեք դաշտավարական բրիգադները միավորվեցին և ստեղծվեց մեկ կոմպլեքսային բրիգադ: Դա հնարավորություն է ընձեռում ավելի լավ տեղաբաշխել ուժերը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը: Կուսժողովի որոշմամբ անցած տարի առաջին անգամ ներդրվեցին բանջարանոցային մշակաբույսերը (կաղամբ, վարունգ, պոմիդոր), կերի ճակնդեղը և կարտոֆիլը:

Կոլտնտեսության գոմերը գյուղի ներսում էին ու հին (30—40-ական թվականներին կառուցված), մի մասը՝ քանդման եզրին: Կուսժողովներում շատ էր

---

ԶԱՐԳԱՐՅԱՆ ՀՈՎՀԱՆՆԵՍ ՆՈՐԱՅՐԻ— ՀԿԿ Աբովյանի շրջկոմի առաջին քարտուղար։

ցեր և ընդունել համապատասխան որոշումներ, սակայն չի կարողացել ապահովել վճռական տեղաշարժեր: Բանն այն է, որ կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները, ինչպես ցույց տվեց ուսումնասիրությունը, պատշաճ ուշադրություն չեն նվիրում կոմունիստների ու անկուսակցականների գաղափարական դաստիարակությանը, չեն ապահովում կոմունիստների ավանգարդային դերը արտադրությունում և հասարակական կյանքում, անհրաժեշտ միջոցներ չեն ձեռնարկում նրանց, հատկապես ղեկավար կադրերի, պատասխանատվությունը բարձրացնելու, շինարարության վճռական տեղամասերում կուսակցական ներազդեցությունն ուժեղացնելու համար: Անբավարար է կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության գործը, այն չի բխում ՀԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի պահանջներից: Այդ առնչությամբ անտարբերություն են դրսևորում տրեստի ղեկավարները: Նրանք չեն հաղթահարում հնացած մտածելակերպը: Կուսկոմիտեի թույլ հսկողության հետևանքով, տրեստի ղեկավարությունը և արհկոմը խախտում են սոցիալական արդարության սկզբունքները՝ բնակարաններ, ավտոմեքենաներ և այգեգործական հողամասեր հատկացնելիս չեն ապահովում հրապարակայնություն: Բացահայտվեցին նաև այլ թերություններ: Եվ ահա այդ ամենի տխուր հետևանքը. տրեստը շահագործման չէր հանձնել 13,5 հազար քմ բնակմակերես, ձախողվում է սոցիալական և տնտեսական նշանակության օբյեկտների շինարարության պլանների կատարումը:

Տրեստում վիճակը կարգավորելու և բացահայտած թերությունները վերացնելու համար շրջկոմի բյուրոն ընդունեց համապատասխան որոշում: Հատկապես պահանջվեց, որ կուսկոմիտեն իր նիստերում և կուսժողովներում քննարկման դնի ղեկավար կադրերի հաշվետվությունը, ըստ ամենայնի բարձրացնի նրանց պատասխանատվությունն իրենց վստահված տեղամասերի գործերի վիճակի համար:

Մեր քննարկումը, ինչ խոսք, անհետևանք չմնաց: Շրջկոմի որոշումը քննարկվեց կուսժողովում, կուսկոմիտեն աշխուժացրեց իր գործունեությունը, սկսեց ակտիվություն դրսևորել ինչպես արտադրության կուսակցական ղեկավարման գործում, այնպես էլ քաղաքական և կազմակերպական աշխատանքում: Վիճակը բարելավվում էր, բայց վրա հասավ Ադրբեջանի «ինտերնացիոնալիստների» չարաբաստիկ, ես կասեի, նողկալի շրջափակումը, որը բացասաբար անդրադարձավ մարդկանց տրամադրությունների և աշխատանքի, կուսկազմակերպության ակտիվության բարձրացման վրա:

Այսպիսով, կադրային քաղաքականության խելամիտ վարումը ևս կուսկազմակերպության բարձր ակտիվության չափանիշ է: Դա նաև կուսշրջկոմի առաջնահերթ խնդիրն է: Ի՞նչ ենք ձեռնարկել այդ առնչությամբ: Ոչ քիչ բան: Այսօր շրջանի կուսակցական, խորհրդային, տնտեսական ղեկավար պաշտոններում փաստորեն չի լինում կադրերի ոչ մի առաջխաղացում առանց հաշվի առնելու սկզբնական կուսկազմակերպությունների, կոմունիստների, աշխատավորական կոլեկտիվների, լայն մասսաների կարծիքը: Տեղերում նմանատիպ քննարկումների ժամանակ ծավալվում է բաց, սկզբունքային, անկողմնակալ խոսակցություն, ոչ միայն բնութագրվում է համապատասխան պաշտոնի ներկայացվող կադրը, այլև նրան տրվում են կոնկրետ պատվիրաններ՝ գործերը շտկելու առումով: Այսպիսի գործելակերպը արդարացնում է իրեն, նպաստում սկզբնական կուսկազմակերպությունների ակտիվության ու դերի բարձրացմանը, հնարավորություն ընձեռում խուսափելու վոլյունտարիստական որոշումներ ընդունելուց և հովանավորչությունից, որոնք տեղ էին գտել, ցավոք, ոչ հեռու անցյալում: Հաշվի առնելով կոմունիստների, աշխատավորների լայն մասսաների կարծիքը՝ վերը նշված ճանապարհով միայն այս տարվա ընթացքում ընտրվել են 12 հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավար առաջին դեմքեր, պետական տնտեսությունների դիրեկտորներ: Նրանց գերակշռող մասը արդարացնում է իրեն, բարեխղճորեն կատարում պարտականությունները: Հենվելով սկզբնական կուսկազմակերպությունների վրա՝ նրանք համարձակորեն հաղթահարում են արմատավորված հնաոճ գործելակերպը, հմտորեն համատեղում ընթացիկ հարցերի լուծումը հեռանկարային խնդիրների հետ:

Ծավալել կենդանի ստեղծագործական կուսակցական աշխատանք, նշանակում է կտրականապես ազատվել թղթարարությունից, հարցերի ձևական քննարկումներից: Շրջանի կուսկազմակերպությունների քարտուղարներին հնարավորություն է ընձեռվում ավելի շատ զբաղվել կոնկրետ գործերով, լինել կոմունիստների, արտադրության մարդկանց մոտ, խորհրդակցել, մտքեր փոխանակել նրանց հետ, ծանոթանալ նրանց հոգսերին ու պահանջներին, բարձրացնել ակտիվությունը: Կուսակցական աշխատանքի վերակառուցումը, կուսակցական կազմակերպությունների, նրանց կոմիտեների, բյուրոների գործունեության ակտիվացումը ինքնանպատակ չէ: Այդ առնչությամբ կատարված յուրաքանչյուր քայլը մենք համեմատում ենք շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման, աշխատավորների հոգևոր հարստացման հետ՝ որոշելով, թե որտեղ են մեր ներդրած ջանքերը բերում առավել մեծ արդյունք կամ որտեղ ենք մենք դեռևս դոփում տեղում և չենք գտնում ճիշտ ուղիներ՝ կենսական կարևոր խնդիրներն ու պրոբլեմները լուծելու համար: Գործնական աշխատանքը ցույց է տալիս, որ այնտեղ, ուր կոմունիստների մեծամասնությունը ուղղակիորեն մասնակցում է քաղաքական որոշումների ձևակերպմանն ու ընդունմանը, դրանց վերահսկմանն ու կենսագործմանը, այնտեղ ապահովվում է գործի հաջողությունը: Դրա վկայությունը Աբովյանի երկաթբետոնյա կառուցվածքների գործարանի կուսկազմակերպության փորձն է: Այստեղ կոմունիստներն ու աշխատավորները շահագրգիռ մոտեցում են ցուցաբերում կոլեկտիվի առջև ծառացած խնդիրների լուծման, վերջնական լավ արդյունքների հասնելու նկատմամբ: Կուսկազմակերպությունը ձգտում է հասնել յուրաքանչյուրի բարեկեցության բարձրացմանը, հոգ տանում մարդկանց մասին: Կուսբյուրոն (քարտուղար՝ Հ. Մարգարյան) փաստորեն չի շրջանցում նրանց հուզող և ոչ մի խնդիր, հաշվի է նստում ոչ միայն կոմունիստների, այլև աշխատավորների լայն մասսաների հետ, պարբերաբար կուսժողովի քննարկմանն է ներկայացնում արտադրությանը, սոցիալական ոլորտին, մարդկանց հոգևոր պահանջմունքների բավարարմանը վերաբերող հարցեր: Կուսբյուրոյի նախաձեռնությամբ, ադմինիստրացիայի ընդառաջմամբ միավորմանն առընթեր արդեն երկու տարի է, ինչ գործում է տնտհաշվարկային շինմոնտաժային տեղամասը: Սերտ համագործակցություն է հաստատվել կուսբյուրոյի, դիրեկցիայի և արհկոմի միջև բնակարանային և սոցիալ-կուլտուրական օբյեկտների շինարարություն ծավալելու ասպարեզում: Այս տարի, օրինակ, կուսակցական ժողովում գործարար մթնոլորտում է քննարկվել արհկոմի նախագահի հաշվետվությունը այդ խնդիրների լուծման առնչությամբ: Ամեն տարի գործարանի միջոցներով բնակելի տուն է կառուցվում: Անցած տարի 30 ընտանիք ապահովվել է բնակարանով, գործարկվել է 95 տեղանոց պանսիոնատը: Բնակշինարարության գործն այնպես է կազմակերպված, որ արդեն 1992 թվականին գործարանում բնակարանային պրոբլեմ չի լինի:

Եվ լավ է, որ երկաթբետոնյա կառուցվածքների գործարանի կուսկազմակերպության օրինակը եզակի չէ: Նման ոճով են գործում «Հայսպակի» արտադրամիավորման, Կոտայքի, Գեղաշենի, Արամուսի կոլտնտեսությունների, Ջրվաշենի պետտնտեսության և այլ կուսակցական կազմակերպություններ:

Հարց է ծագում. ինչու՞ լավագույն կազմակերպությունների փորձը չի դարձել մյուսների համար գործնական օրինակ: Շատ պատճառներ կարելի է թվարկել, սակայն գլխավորն այն է, որ, ձգտելով արմատավորել նորը, մենք հիմնականում հենվում էինք ընդունված որոշումների, հրամանների ուժի վրա և քիչ մտածում այն մասին, թե ինչպես շարժել մյուս կուսկազմակերպությունների, տնտեսական ղեկավարների և աշխատավորական կոլեկտիվների հետաքրքրությունը՝ գործնականում իրեն արդարացրած առաջավոր փորձը ներդնելու նպատակով:

Շրջանում ավանդույթ է դառնում լայն երկխոսության ծավալումը սկզբնական կուսկազմակերպություններում, աշխատավորական կոլեկտիվների ընդհանուր ժողովներում, ազգաբնակչության հետ: Հետևողականորեն օգտագործվում են աշխատանքի այնպիսի ձևեր, ինչպիսիք են սեմինար-խորհրդակցությունները, գիտատեսական, գիտագործնական կոնֆերանսները, հասարակական-քաղաքական ընթերցումները, «Կլոր սեղան»-ները և այլն: Իհարկե, արդի ժամանակաշրջանն այնպիսի բուռն, դինամիկ բնույթ է կրում, որ եթե մեր գործունեությունը չհամապատասխանի կյանքի զարկերակին, ապա մենք շատ բան կկորցնենք: Ուստի ձգտում ենք աշխատանքի կենտրոնը տեղափոխել սկզբնական օղակ, կուսկազմակերպություն, աշխատավորական կոլեկտիվ, ուշի-ուշով հետևել շրջանում տիրող հասարակական կարծիքին: Այդ առնչությամբ համապատասխան աշխատանք է ծավալվում շրջկոմին առընթեր սոցիոլոգիական կենտրոն ստեղծելու համար: Իսկ այսօր շրջանում հասարակական կարծիքը բազմաբնույթ է և ունի տարբեր երանգներ, որոնք իրենց արտահայտությունն են գտնում տարբեր տեսակի հանդիպումների, ժողովների, խորհրդակցությունների ժամանակ և որոնք խորհելու մեծ առիթ են տալիս սեփական գործելակերպի մասին, թելադրում են փնտրել նոր ուղիներ սկզբնական

կուսկազմակերպությունների մարտունակության, ակտիվության բարձրացման, այն կենդանի ստեղծագործական օղակ դարձնելու համար:

Բալահովիտի նախագծային արտադրամիավորման սկզբնական կուսկազմակերպությունը (քարտուղար՝ Գ. Առուստամյան) հետևողական աշխատանք է տանում կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու համար: Այդ հարցը մշտապես գտնվում է նրա տեսադաշտում: Հատկապես մեծ պահանջներ են առաջադրվում ղեկավար պոստեր զբաղեցրած կոմունիստներին: Այսպես, հերթական կուսժողովներից մեկում գործարար մթնոլորտում քննարկվեց կադրերի ընտրության, տեղաբաշխման և դաստիարակության հարցը: Ժողովականները հատկապես նշեցին տնտեսական կադրերի գործունեության թերությունները: Ժողովը նպատակահարմար համարեց հետայսու նրանց աշխատանքի երաշխավորելիս հաշվի առնել կոլեկտիվի կարծիքը, տեղաբաշխումը կատարել ընտրության եղանակով՝ մեկից ավելի թեկնածուի քվեարկությամբ: Որոշվեց նաև անցկացնել ինժեներատեխնիկական անձնակազմի և բանվոր-ծառայողների ատեստացիա:

Կուսկազմակերպությունում լայն կիրառություն է ստացել կոմունիստների հաշվետվությունների քննարկումը, որը ևս նրանց ակտիվության բարձրացման կարևոր պայման է: Անցած մեկ տարում իրենց աշխատանքի մասին կուսժողովին հաշիվ են տվել երիտասարդ կոմունիստներ Վ. Բեգլարյանը, Լ. Խրիմյանը, Ս. Բուդաղյանը, Հ. Գևորգյանը և ուրիշներ: Ընդ որում, քննարկմանը մասնակցել են նաև նրանց տեղամասերի, արտադրամասերի, բաժինների աշխատողները: Գործունեության այս պրակտիկան լայն պաշտպանության արժանացավ ԽՄԿԿ XXVII համագումարում: Համագումարը խնդիր դրեց, որպեսզի յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության մեջ կոմունիստները փոխադարձ պահանջկոտության իրադրություն ստեղծեն, որը բացառի որևէ մեկի կողմից կուսակցության նորմերն անտեսելու ամեն մի հնարավորություն: Այդ առնչությամբ էլ բարձր գնահատվեց այն կուսկազմակերպությունների փորձը, որոնցում անցկացվում է կոմունիստների կանոնավոր հաշվետվություններն իրենց ընկերների առջև: Այլ խոսքով, այդ ձևի կիրառումը նպաստում է իրենց կազմակերպության հանդեպ կուսակցության առանց բացառության բոլոր անդամների պատասխանատվության ամրապնդմանը, նրանց ակտիվության բարձրացմանը: Միայն ակտիվություն դրսևորող կոմունիստը կարող է հանդես գալ լավ նախաձեռնությամբ: Այսպես, ԽՄԿԿ անդամ, վարորդ Վ. Հարությունյանը կուսժողովներից մեկում հարց բարձրացրեց աղետի գոտում ստեղծել տրանսպորտային բրիգադ և ինքն էլ ընդգրկվեց այդ կոլեկտիվում: Այսօր նա կարող է միայն հպարտությամբ խոսել աղետյալներին ցույց տված իր օգնության մասին: Կամ կուսժողովի որոշմամբ կոմունիստ Գ. Ալեքսանյանը գործուղվեց աղետի գոտի՝ որպես շինմոնտաժային աշխատանքի բրիգադավար: Նա կարողացավ կարճ ժամանակում համախմբել կոլեկտիվը և ապահովել առաջադրանքների կատարումը:

Քննարկելով որևէ կուսկազմակերպության հաշվետվություն, մենք հետևում ենք, որ ընդունած որոշումը հասնի նրա յուրաքանչյուր անդամին ու կենսագործվի հետևողականորեն: Այդ նպատակով հաճախ ենք ասպարկող հրահանգիչներին գործուղում տեղերը: Կուզեի ասածս հաստատել «Դինամո» փաբրիկայի կուսկազմակերպության օրինակով: Այստեղ կոնկրետ քայլ չի արվել տնտեսական ռեֆորմի պահանջները կատարելու համար, դանդաղ է ներդրվում տնտհաշվարկը, ձգձգվում է աշխատավորների աշխատավարձի վճարումը: Տարիներ շարունակ փաբրիկայում չեն բարելավվում բանվորների սոցիալ-կենցաղային, աշխատանքային պայմանները: Ծուրջ չորս տարի է, ինչ ոչ ոք բնակարան չի ստացել: Իսկ ի՞նչ դիրք է գրավել կուսկազմակերպությունը, նրա բյուրոն: Պարզապես՝ ինչ որ տեղ անտարբեր: Ստեղծված իրավիճակը շտկելու նպատակով կուսշրջկոմն ստիպված եղավ միջամտել: Հարցը քննարկվեց բյուրոյի նիստում: Ձեռնարկության դիրեկտորը չերաշխավորվեց հետագայում այդ պաշտոնը զբաղեցնելու, կուսբյուրոյի քարտուղարը նախազգուշացվեց:

Ֆաբրիկայում վիճակը արմատապես շտկելու համար անհրաժեշտ էր ուժեղացնել կուսկազմակերպության մարտունակությունը, ակտիվացնել նրա բյուրոյի գործունեությունը, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ իրեն զգա որպես կուսակցական ջոկատի անդամ: Խնդրի լուծումը պահանջում էր յուրաքանչյուր կոմունիստի հետ տանել անհատական աշխատանք: Այդ նպատակով շրջկոմի հրահանգիչ Ա. Գրիգորյանին մեկ ամսով գործուղեցինք ֆաբրիկայի կուսկազմակերպություն: Նա ապահովում էր շրջկոմի կապը սկզբնական կուսկազմա-



կերպության հետ: Նրա մասնակցությամբ մշակվեց տեխնիկատնտեսական և կազմակերպչական միջոցառումների պլան՝ ստեղծված իրավիճակից դուրս գալու համար: Դրա իրականացման հսկողությունը դրվեց սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի վրա: Այդ ընթացքում պարզվեց մի իրողություն. կուսբյուրոյի քարտուղարը, որին ընտրել էին կուսշրջկոմի երաշխավորությամբ, չի կարողանում այդ կոլեկտիվում առաջատարի դեր խաղալ: Անցկացվեց քարտուղարի նոր ընտրություն, հրավիրվեց կոլեկտիվի ընդհանուր ժողով, որտեղ հաշվետվությամբ հանդես եկավ միավորման գլխավոր դիրեկտորը: Նրանից պահանջվեց ձեռնարկել գործնական միջոցներ՝ գործերը արմատապես շտկելու համար: Իհարկե, կոլեկտիվի անդամները հասկանում էին, որ տարիներ շարունակ կուտակված պրոբլեմները միանգամից հնարավոր չէ լուծել: Շատ բաներ են պայմանավորված վերադաս մարմինների գործելակերպով: Իսկ շատ հարցեր էլ կարելի է լուծել տեղում, հենց կուսկազմակերպության հսկողությամբ ու գլխավորությամբ: Այդպես էլ արվում է. իրականացվում են սոցիալ-կենցաղային մի շարք միջոցառումներ, աստիճանաբար ամրապնդվում է աշխատանքային, տեխնոլոգիական ու կատարողական կարգապահությունը, ապահովվում արտադրության համաչափ աշխատանքը: Բավական է ասել, որ առաջին ինը ամիսներին 100 տոկոսով կատարվեցին պայմանագրային պարտավորությունները: Ի դեպ, ֆաբրիկայի կոլեկտիվը վերջերս ընտրեց նոր դիրեկտոր:

Շրջկոմի կազմակերպական բաժինը, ելնելով վերակառուցման արդի պահանջներից, որոնում և կիրառում է քարտուղարների ուսուցման նոր ձևեր ու մեթոդներ: Վերջին երկու տարում ուսուցման արդյունավետ ձև են դարձել փնջային սեմինար-խորհրդակցությունները: Դրանք հրավիրվում են կուսակցության քաղաքականության առանձին կամպանիաների հաջող նախապատրաստման ու անցկացման, աշխատանքի առաջավոր փորձի ընդհանրացման ու մասսայականացման նպատակով, հաճախ՝ ըստ ռեգիոնների (Գառնիի, Բյուրեղավանի ենթաշրջանների, «Սիրիուս» գործարան) և հարցազրույցների ձևով: Ընդ որում, սեմինար-խորհրդակցություններին մասնակցում են ոչ միայն կուսքարտուղարները, այլև կոմիտեների և բյուրոների անդամները:

Կուսքարտուղարների ուսուցումը կազմակերպում ենք նաև ըստ արտադրության բնագավառների: Դրա նպատակը ԽՄԿԿ Կենտկոմի որոշումների արդյունավետ ուսումնասիրությունն է: Լավ քննություն է բռնել հաշվետու-ընտրական ժողովներից հետո նորընտիր քարտուղարների ուսուցումը: Այն անցկացնում ենք ինչպես խմբային, այնպես էլ անհատական ձևով: Ընդ որում, արծարծվում են ներկուսակցական կյանքի անխտիր բոլոր հարցերը: Նրանց հետ անհատական զրույցներ են ունենում շրջկոմի քարտուղարները, բաժինների վարիչները և ասպարկող հրահանգիչները:

Կուսկազմակերպությունների ակտիվությունը բարձրացնելու համար շրջկոմի ապարատի աշխատողները պետք է դուրս գանք աշխատասենյակներից, լինենք կոլեկտիվներում, չխուսափենք կոմունիստների, անկուսակցական զանգվածների հետ շիտակ խոսելուց, նաև անհատական զրույցներ ունենանք:

Շատ կարևոր եմ համարում, որպեսզի մենք՝ կուսաշխատողներս, կարողանանք մշտապես բարձրացնել մեր որակավորումը, պրոֆեսիոնալ մակարդակը, պրպտել, որոնել, քաջատեղյակ լինել կոլեկտիվում, շրջանում, հանրապետությունում, Միությունում, աշխարհում տեղի ունեցող իրադարձություններին, մեր աշխատավոր զանգվածների խոհերին ու մտորումներին, հոգսերին ու պահանջներին:

Տարվելով առօրյա հոգսերով՝ հաճախ ժամանակ չենք ունենում մանրակրկիտ ձևով վերլուծել վերադաս կուսմարմինների ընդունած որոշումները, մամուլում հրապարակված կուսակցական աշխատանքի փորձը, գերլարված աշխատում ու պահանջ ենք զգում հարստացնել մեր գիտելիքները: Երբեմն էլ չենք կարողանում ճիշտ ըմբռնել տնտեսական ռեֆորմի պահանջները, նպաստել դրա կիրառմանը: Դրանով պիտի բացատրել, որ ոչ բոլոր սկզբնական կուսկազմակերպություններն են կարողանում իրենց գործունեությամբ նպաստել աշխատանքի կազմակերպման և տնտեսավարման նոր ձևերի, մասնավորապես վարձակալական կապալի լայն ներդրմանը:

Կարծում եմ, որ կուսակցական աշխատանքը խիստ վերակառուցման կարիք ունի: Հարկ է, որ ՀԿԿ Կենտկոմը կուսակցական կոմիտեների քարտուղարներին ընդգրկի հատուկ ծրագրով դասընթացներում, քանի որ մինչև այժմ գործողները անհրաժեշտ մակարդակը չունեն:

Մենք այնքան էլ հասու չենք արվեստի արժեքներին, գիտության ու տեխնիկայի նորույթներին, հետ ենք մնում, պարփակվում մեր աշխատանքի շրջանակում, դրա համար հաճախ գործում ենք հին ձևով: Մինչդեռ կուսաշխատողը, այդ թվում և սկզբնական կուսկազմակերպության քարտուղարը, պետք է համակողմանի զարգացած անձնավորություն լինի: Հետևաբար, ՀԿԿ Կենտկոմը պետք է արմատապես կատարելագործի կադրերի վերապատրաստման ու որակավորման ողջ համակարգը, նույն կերպ պիտի վարվեն նաև շրջկոմ-քաղկոմները սկզբնական կուսկազմակերպությունների հետ տարվող աշխատանքում: Նրանք միշտ էլ զգում են մեր օգնության կարիքը: Այսպես, ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ խոշոր կոլեկտիվներում որոշակի դժգոհություն են արտահայտում այն կապակցությամբ, որ իրենց ձեռնարկությունների տարածքում չեն գործում խանութներ, մարդիկ շատ ժամանակ են վատնում աշխատանքից հետո գնումների վրա, և այդ գործում կուսկազմակերպությունները պասիվություն են դրսևորում: Շրջկոմի անմիջական օգնությամբ սկզբնական կուսկազմակերպությունները լրջորեն մտահոգվեցին այդ հարցով և նրանց նախաձեռնությամբ «Սիրիուս», «Զափիչ», «Հայբյուրեղապակի» գործարաններին կից բացվում են խանութներ, որոնք կսպասարկեն նրանց կոլեկտիվների անդամներին: Կուզեի խոսել ևս մի շատ կարևոր ու հրատապ խնդրի շուրջ: Ներկա պայմաններում, մենք՝ կուսաշխատողներս, պիտի ահագորեն վերակառուցենք մեր գործունեությունը: Ոչ փորմալ կազմակերպությունների գոյության պայմաններում պարտավոր ենք համագործակցել ակտիվ քաղաքական դիրքորոշում ունեցող անձանց հետ, նրանց մասնակից դարձնել հասարակական-քաղաքական կյանքին: Այդ խնդիրը պետք է գտնվի կուսշրջկոմի և սկզբնական կազմակերպությունների աշխատանքի հիմքում:

Այսօր սկզբնական կուսակցական կազմակերպության կոնկրետ գործերով են մարդիկ դատում կուսակցության մասին: Հեղինակավոր որոշումների ընդունում, խոսքի և գործի միասնություն՝ ահա այն կապիտալը, որը գործում է հօգուտ կուսկազմակերպության, նրա ղեկավար մարմնի, կուսքարտուղարի հեղինակության բարձրացման: Մարդիկ համախմբվում են նրանց շուրջը, հավատում նրանց, և այդ հավատը պետք է թանկ գնահատել, արդարացնել ամենօրյա աշխատանքով:

---



# ԳԻՏԱԿԱՆ ՃՇՄԱՐՏՈՒԹՅԱՆ ՈՒՂԻՆԵՐՈՒՄ*

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ԿԱՐՈՂ Է ԹՎԱԼ, ԹԵ ՎԵՐՋԻՆ ՏԱՍՆԱՄՅԱԿՆԵՐԻՆ գիտությունների բնագավառում ամենից շատ նորարարությունը եղել է կուսակցության պատմության գիտական մշակման ասպարեզում: Իրականում, սակայն, այդպես չէ, քանի որ ամենաշատ խեղաթյուրումները գիտությունների մեջ բաժին էին ընկնում կուսակցության պատմությանը: Ճիշտ է, տեսակետները փոխվում են, փաստերը ճշգրտվում, բարձրացվում են ոչ քիչ թվով նոր հարցեր: Բայց դա դեռևս նյութի գիտական ամբողջականացում չէ:

Որո՞նք են մեր նկատառումները Հայաստանի կոմկուսի պատմության նոր գրքի ստեղծման վերաբերյալ:

Նախ, մեթոդաբանական առումով արդյո՞ք պետք է, որ բոլոր հանրապետությունների կոմկուսների պատմությունը շարադրվի նույն սխեմայով, ինչ որ ամբողջ կուսակցության պատմությունը, ինչպես որ եղել է անցյալում: Տեղերում, ազգային հանրապետություններում, որքան մեզ հայտնի է դառնում կենտրոնում անցկացված խորհրդակցություններից և մամուլի էջերից, սպառողական վիճակ է: Ոչ ոք և երբեք չի ժխտել Մոսկվայի պատմաբանների նպաստավոր դերը: Այնպես որ, բոլոր դեպքերում կոնկրետ պատմական նյութով պետք է պայմանավորվի կուսակցության ջոկատներից ամեն մեկի պատմության և՛ պարբերացումը, և՛ մենագրական շարադրության կառուցվածքը:

Միայն ԽՄԿԿ պատմության սխեմայով առաջնորդվելով տեղական հեղինակները ստիպված են լինելու գնալ, այսպես ասած, պատմաշինարարության ճանապարհով. ուռճացնելու են եղած քիչը, հորինելու են «փաստեր», գունազարդելու են իրականությունը: Դրա փոխարեն ստվերի տակ է մնալու տեղական այն յուրօրինակը, որն ընդհանուրի կրկնությունը չէ ձևի առումով, բայց ըստ բովանդակության դարձյալ հեղափոխական շարժումների, բոլշևիկյան կազմակերպությունների պատմություն է: Այժմ խնդիրը փաստագրական ուսումնասիրություն գրելն է, այլ ոչ թե բառային կառուցվածքին հետամուտ լինելը, ըստ որի ամեն տեղ գործերը միակերպ են եղել՝ և ճիշտը, և սխալը, իսկ գործիչներն էլ՝ ընդհանուր առմամբ նույնատիպ արարքների, միատեսակ գործողությունների, վարքագծի և կերպարի նույն հատկանիշների մարդիկ: Հիշենք, թե ինչպես ժամանակին կուսակցական գործիչները կա՛մ կոմունիզմի անվեհեր, բոցաշունչ մարտիկներ էին, Լենինի կամ Ստալինի հավատարիմ զինակիցներ, կա՛մ ժողովրդի նողկալի թշնամիներ, բանվոր

* Հոդվածում մտքերի փոխանակության կարգով շոշափվում են Հայաստանի կոմկուսի պատմության գլխավորապես մինչխորհրդային ժամանակաշրջանի հարցերը:

*ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՆԻԿՈՂԱՅԻ — ԽՄԿԿ Կենտկոմին առընթեր մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հայկական մասնաճյուղի — ՀԿԿ Կենտկոմի կուսակցության պատմության ինստիտուտի դիրեկտորի տեղակալ, պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր:*

պատմություն չէ: «Նեղ իմաստով» և «սոսկ»: Իսկ ինչու՞ մյուս ժողովուրդների զավակների հետ մի ժողովրդի կատարած գործերը ևս չպետք է կազմեն նաև տվյալ ժողովրդի պատմագիտական հետազոտության անբաժան մասը: Դարձյալ հարց է ծագում. ուրիշ ի՞նչ կերպ հասկանալ ինտերնացիոնալիզմը և ինչու՞ այդ ինտերնացիոնալիզմը չամփոփել տվյալ ժողովրդի պատմության մեջ: Հակառակ կերպով վարվելը այն գործողություններից մեկն է, որը մեզանում վերջին տարիներին բանավոր թե գրավոր խոսքում որակվում է որպես ազգային արհամարհանք, որպես նիհիլիզմ և, ուռճացնելով ու առանց ուռճացվելու, բնութագրվում է նաև որպես ուրիշի պատմության բռնազավթում:

ԽՍՀՄ-ը սովորականից ավելի բազմազգ երկիր է: Խորհրդային ազգերից ամեն մեկը ժամանակների խորքում իր բախտի յուրօրինակ բերմամբ է հայտնվել ռուսաստանյան կայսրության կազմում: Դեռևս Ռուսաստանին միավորվելուց առաջ հայերն առևտուր են արել Ռուսաստանի տարբեր մասերում, այնտեղ գալով աշխատանքի և վաստակի որոնումների ճանապարհով, և, այդպես, դարերի ընթացքում մեծ տերության այդ տարբեր մասերում ձևավորվել են հայ մեծազանգված բնակչության գաղթավայրերը՝ Ռուսաստանի տերության և ժողովրդի հետ ունեցած սերտ կապերի պայմաններում իրենց ինքնամփոփ տնտեսությամբ և ազգային-մշակութային կյանքով, երբեք չխզելով կապը մայր Հայաստանի հետ: Այդպիսի գաղթօջախներ են եղել Հյուսիսային Կովկասի մի շարք քաղաքներում, Աստրախանում, Դոնի Ռոստովում, Աշխաբադում, Սարատովում, Խարկովում, Կիևում, Օդեսայում, Մոսկվայում, Պետերբուրգում... Այդ վայրերում հայ աշխատավորները, մտավորականության առաջադեմ ներկայացուցիչները մասնակցել են տեղական մարքսիստական խմբակների, սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ստեղծմանը, ավելի ուշ՝ 1918—1920 թվականներին, ՌԿ(բ)Կ տեղական կազմակերպությունների հայ անդամները կազմել են նրանց ազգային սեկցիաները: Վերջիններս սերտ կապի մեջ են գտնվել Արևմտյան Հայաստանի և Անդրկովկասի հայ իրականության հետ և իրենց ավանդն են մուծել հայության ինչպես ազգային ազատագրության, այնպես էլ հեղափոխական պայքարին: Չմոռանանք, որ նրանք ունեցել են իրենց բոլշևիկյան թերթերը, ինչպես Աստրախանում, Դոնի Ռոստովում, Աշխաբադում, հայերեն մարքսիստական գրականության հրատարակչություն՝ Մոսկվայում, հայկական դպրոցներ, ակումբներ ու մշակույթի տներ, որոնց թվում հայտնի Լազարյան ճեմարանը Մոսկվայում:

Նշված թերթերի էջերում զգալի տեղ են գրավում Հայաստանի հեղափոխական, ազատագրական պայքարին նվիրված նյութերը, թղթակցությունները Հայաստանից: Մոսկվայում լույս տեսած հեղափոխական գրականությունը տարածվել է ինչպես Ռուսաստանի հայաբնակ վայրերում, այնպես էլ բուն Հայաստանում: Ի վերջո, 1918 թ. սկզբներին Ռուսաստանի հայաբնակ վայրերի կոմունիստները, ՌԿ(բ)Կ անդամներ, միաժամանակ մտել են նաև այդ ժամանակ ձևավորված և այդ վայրերում գործող Հայաստանի կոմունիստական կուսակցության շարքերը, Ռուսաստանում սկսված նոր տնտեսական-քաղաքական կյանքին իրենց մասնակցության հետ մեկտեղ օժանդակելով բուն Հայաստանում ապրող հայ ժողովրդի ազատագրական խնդիրների լուծմանը: Ինչպե՞ս վարվել պատմական այս նյութի հետ: Ոչ մի առարկություն չի հարուցում այն, որ այդ նյութը Ռուսաստանի պրոլետարական հեղափոխական շարժման և այնտեղ ձևավորված կոմունիստական կազմակերպությունների պատմության յուրօրինակ բաղկացուցիչ մասն է: Ոչ մի առարկություն: Չնայած դրան, կուսակցության պատմության ամբողջական դասագրքերում ու ձեռնարկներում, որպես կանոն, այդ պատմությունը մեզ համար անհասկանալի պատճառով դուրս է մնացել, իսկ առանձին մենագրություններում սոսկ հպանցիկ հիշատակումներ են եղել: Այսինքն՝ պատմությունը ներկայացվել է ոչ թե որպես պատմություն, այլ դրվագ:

Մենք՝ Հայաստանի պատմաբաններս, կարծում եմ ճիշտ վարված կլինենք, եթե առաջիկայում ստեղծվելիք ՀԿԿ պատմության ամբողջական մենագրության մեջ և թեմատիկ ուսումնասիրություններում անցյալի համեմատ ավելի ընդարձակ տեղ տանք Ռուսաստանի հայ գաղթօջախների կոմունիստական կազմակերպությունների ձևավորման, տեղի այլ ազգերի հետ նոր կյանքի ստեղծմանը հայ աշխատավորների մասնակցությունն ապահովելու գործում նրանց կատարած կազմակերպչական աշխատանքի, ինչպես նաև Հայաստանի հետ ունեցած կապերի



պատմությանը: Դա կոմունիստական կուսակցության լենինյան ինտերնացիոնալիզմի օրինակ է, հայ, ռուս և մեր երկրի մյուս բոլոր ազգերի աշխատավոր զավակների համագործակցության անշրջանցելի պատմություն: Չմոռանանք նաև նշել, որ դա նաև տվյալ պատմական իրավիճակում ընձեռված հնարավորության շրջանակներում ազգային հարցի լուծման բնորոշ օրինակ էր. համենայնդեպս արվում է հնարավորը ազգային դպրոցների, ազգային մշակույթի օջախների ստեղծման համար՝ որպես անջրպետ ասիմիլյացիայի վերապրուկների դեմ: Թեև, տեղին էր ասել, որ այդ ամբողջը հետագա տարիներին գրեթե իսպառ քամուն տրվեց, և ազգային կյանքը վաղուց արդեն նշված վայրերի մեծ մասում մարել է:

Ներկայումս, Հոկտեմբերի հաղթանակից տասնամյակներ անց, երբ վերակառուցումը այլևս ոչ միայն սոսկ բառերով է որակվում, այլև իրեն դրսևորում է որպես Հոկտեմբերյան հեղափոխության շարունակություն, ինքնին անհրաժեշտություն է դառնում երկրում սոցիալիզմին անցման նախաշեմին այդ անցման նյութական, սոցիալ-քաղաքական և կուլտուրական նախադրյալների առկայության հարցի գիտական արծարծումն ու պարզաբանումը: Սա հարցերի մի ամբողջ կոմպլեքս է, որի լուծումը կպահանջի գիտությունների մի ամբողջ շարք բնագավառների ջանքերը: Միշտ էլ, ինչպես երկրի բազմաթիվ ռեգիոններում, այնպես էլ Հայաստանում թե՛ խորհրդային իշխանության հաստատումից առաջ և թե՛ հետագայում եղել է ու կա հարցականը. ինչպիսի՞ն էին այդ նախադրյալները Հոկտեմբերի ակունքներում, սոցիալիզմին անցման ի՞նչ հնարավորություններ էին դրանք ընձեռում: Եթե անցյալում, անցման շեմին և անցման սկզբնափուլի տարիներին, հարցականը գերազանցապես վերաբերում էր նյութական նախադրյալներին, ապա հետզհետե հարցականի շրջանակներն ընդլայնվեցին: Այսօր արդեն լրջորեն, համակողմանիորեն կշռադատելով կապիտալիզմից սոցիալիզմին անցման պրոցեսի արդյունքները, ներկայիս թերացումների ակունքները պարզաբանելու համար գիտական մտքից պահանջվում է պատասխան տալ, թե ինչպիսի՞ն էր արտադրողական ուժերի զարգացման մակարդակը Հայաստանում, կապիտալիզմն այնտեղ իր նոր-նոր ներթափանցմա՞ն, թե՞ նաև զարգացման մի որոշ աստիճանի վրա էր գտնվում, ինչպիսի՞ք էին բանվոր դասակարգի թվակազմը, դեմոկրատիայի մասին նրա ըմբռնումները, դեմոկրատիայի կիրառման նրա փորձը և որքանով էին աշխատավոր բնակչության կրթական, կուլտուրական զարգացման մակարդակը բավարարում էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպեր ապահովելու, հասարակական կյանքում հոգևոր-բարոյական պատշաճ խթաններ գործողության մեջ դնելու, սոցիալական արդարության անհրաժեշտ մակարդակ հաստատելու համար: Եվ բազմաթիվ այլ հարցեր, որոնք առնչվում են Հայաստանում կապիտալիզմի զարգացման աստիճանը որոշելու հետ:

Անցյալում հասարակագիտական միտքը այդ հարցերը, իմիջիայլոց, թերևս քիչ բացառությամբ, չի շրջանցել: Մեղքը հարցադրման բացակայությունը չի եղել, այլ ոչ լրիվությունը և այդ ոչ լրիվությունն անգամ որպես միտումնավոր քայլ գնահատելն ու պատասխանի ոչ միայն անբավարար գիտականությունը, այլ առանձին դեպքերում պրովոկացիոն բնույթը: Նման մոտեցման միտումը իրականության սքողումն ու գունազարդումն էր: Սոցիալիզմի հապշտապ, հախուռն, ոչ լրջմիտ կառուցման ստալինյան նեղմիտ և թյուր կոնցեպցիան թույլ չէր տալիս, պարզապես արգելակում էր համանման ամեն մի հարցի լրջմիտ կշռադատումը: Երբ հնգամյակները պետք է կառուցվեին չորս տարում, երբ ինդուստրացումն ու գյուղատնտեսության կոլեկտիվացումը բացատրվում էին որպես սոսկ մի քանի տարիների գրոհային խնդիրներ և ստալինյան հանճարի ամենակարող ուժի առկայությամբ իրական էին բոլոր հրաշքները, ի՞նչ հարկ կար նման հարցերը լրջորեն շոշափելու: Բայց եթե հիմա էլ սպասենք, կնշանակի կյանքի առաջադրած հարցերի լուծումը դարձյալ ապագային թողնել և շարունակել տուրք տալ կիսատպռատությանը: Սա բազմաթիվ այն օրինակներից մեկն է, թե ինչպես պատմական գիտությունը կարող է հզոր քաղաքական լծակ լինել: Այն պետք է համարձակորեն բացահայտի պատմական ուղուց շեղումների պատճառները: Անհաշիվ են անցյալի հետ կապված ներկայիս հարցերը. ինչու՞ մեզանում ինդուստրացումը այդպես էլ կատարյալ չէ, ինչու՞ ագրարային հարցը չի լուծվել 20 և 30-ական թվականներին, ինչու՞ այն մինչև օրս էլ դեռ որոնում է ու պրոցես: Ինչու՞ դեմոկրատիայի կիրառման մեր այսօրվա ջանքերը հանգեցնում են այնպիսի ձևերի, հատկապես մեր ընտրական

սիստեմի, գործերի պառլամենտական վարույթի մակարդակի ասպարեզներում, որոնք պահանջում են պատասխան տալ պատմագիտական այն հարցին, թե դեմոկրատիայի ի՞նչ փորձ ուներ մեր հասարակությունը ցարիզմը տապալելու պահին և այդ ի՞նչ նոր փորձ ձեռք բերեց նա փետրվարից հոկտեմբեր ընկած ժամանակամիջոցում և որքա՞ն, իրոք, ճշմարիտ ու փրկարար էին Վ. Ի. Լենինի կանխազգացումներն ու խորհուրդները, որոնք բոլորն էլ զարնվեցին կանխարգելման ստալինյան վարչահրամայական մեթոդներին: Եվ ինչու՞ զարնվեցին:

Ակունքների պատմությունը առօրյա կենսահույզ հարցերի լուծմանը պետք է նյութ մատուցի և օժանդակի: Չմոռանանք, որ վերակառուցման ներկայիս օրերը նույնպես ակունքների պատմության սկզբնափուլ են: Ինչպես որ այսօր երեկվա, վաղն էլ այսօրվա սխալները պետք է բացահայտվեն ու քննադատվեն:

Նշված հարցերի հետ սերտորեն առնչվում են կապիտալիզմի՝ Հայաստան ներթափանցման և Հայաստանում նրա զարգացման մակարդակի վերաբերյալ ընդհուպ մինչև Հայաստանում խորհրդային իշխանության հաստատումը եղած տարակարծությունները, որոնք բոլշևիկյան հին սերնդի ներկայացուցիչները շարունակում էին մինչև 1970-ական թվականները, նրանց մեջ ավելի երիտասարդները՝ նաև մինչև օրս: Սոցիալիզմի գաղափարի նկատմամբ որևէ հակակրանք չտածող ազնվաբարո մեր մտավորականներից շատերն էին հարց տալիս, թե Հայաստանը պատրաստ էր արդյոք ընթանալու դեպի սոցիալիզմ, տնտեսական զարգացման այդ մակարդակից նրա ուժերը կներե՞ն արդյոք նման անցման համար:

Ի՞նչ էին գրում և հիմնավորում հայ մարքսիստները այդ ժամանակամիջոցում տվյալ հարցի մասին:

Ստ. Շահումյանը քննադատում էր Ռուսաստանում և Անդրկովկասում կապիտալիզմի զարգացումը կասկածի ենթարկելու նարոդնիկական փորձերը: Ալ. Մյասնիկյանը, վկայակոչելով Կ. Մարքսի միտքը, ասում էր, որ հետամնաց երկրները տուժում են ոչ այնքան կապիտալիստական արտադրության զարգացումից, որքան նրա զարգացման պակասությունից: Ս. Կասյանն ավելի վաղ շրջանի իր գրվածքներում, փաստը վերլուծելով իր անդրկովկասյան ամբողջության մեջ, հաստատում էր կապիտալիզմի ներթափանցումը երկրամաս, այդ թվում Հայաստան, և ոչ միայն անկեղծորեն քարոզում էր սոցիալիստական հեղափոխության հաղթանակի և սոցիալիզմին անցման հնարավորության գաղափարը, այլև մարտընչում էր դրանց իրականացման համար: Սակայն հետո, երբ արդեն ինքը ի պաշտոնե և հեղափոխականի բարոյական էության իր խոր ըմբռնմամբ քննում էր սոցիալիզմին անցման ձևերի կիրառության հարցը, չէր թաքցնում իր թերհավատությունը: 1922 թվականին նա գրում էր այն մասին, որ Հայաստանը ոչ թե «գերազանցորեն», այլ «բացարձակապես» գյուղացիական երկիր է, բերելով թվեր ու փաստեր: Եվ պնդում էր, որ «Հայաստանը զուրկ էր մնացել ռուսական կապիտալիզմի ներգործությունից: Նա ենթարկված էր միայն առևտրական կապիտալի քայքայող բրիչին, իսկ արդյունագործական կապիտալի շինող մուրճն ու զնդանը չեն աշխատել այնտեղ» (Ս. Կասյան, «Հայաստանի տնտեսական-դասակարգային ստրուկտուրան», «Նոր աշխարհ», 1922, № 1, էջ 8—21): Գրում էր այս և եզրակացնում Հայաստանում դասակարգային խոր հակամարտության բացակայության մասին: Սա գրում էր Լայպցիգի առևտրական ինստիտուտն ու Բեռլինի համալսարանի փիլիսոփայական ֆակուլտետն ավարտած խորագիտակ մարքսիստը, որը բարձրագույն կրթություն ունեցող այն ոչ մեծ թիվ կազմող բոլշևիկներից մեկն էր, որը և՛ փիլիսոփայական, և՛ առևտրական գիտությունների գիտական աստիճան ուներ, Կ. Մարքսին ու Ֆ. Էնգելսին կարդում էր գերմաներեն բնագրով և կատարում թարգմանություններ: Նա ուզում էր ազնիվ լինել և ճշմարտախոս: Մինչդեռ ժամանակի առաջընթացին զուգընթաց թե՛ ազնվությունը, թե՛ ճշմարտախոսությունը դառնում էին անձի համար վտանգավոր հատկանիշներ:

Վ. Ի. Լենինը Անդրկովկասում կապիտալիզմի զարգացման փաստը հաստատելու համար վկայակոչում էր ոչ միայն Բաքվի արդյունագործությունը, այլև, որպես գյուղում ապրանքային արտադրության ծլարձակում, գյուղացիության բնափակ տնտեսության հիման վրա ամբողջ գյուղի համար արհեստների կազմակերպումը, կոնկրետ կերպով նշելով դարբնի արհեստը: Կովկասյան գրականությունից քաղած նյութերի հիման վրա նա արհեստագործությունը որակում էր որպես արդյունաբերության ձև: Վ. Ի. Լենինը բերում էր նաև բրուտագործի օրինակը, որն իր պատրաստած իրերը փոխանակում էր հացահատիկի հետ (տե՛ս ԵԼԺ, հ. 3, էջ 409—410): Այլ կերպ ասած, նա բերում էր օրինակներ, որոնք բնորոշ են նորածնունդ կապիտալիզմին: Նշելով, որ Ռուսաստանը Կովկասը գրավել է իր ներքին շուկայի մեջ, նա ընդգծում է, որ Ռուսաստանը դա կատարել է ավելի ուշ, քան երկրամասն իր քաղաքական կարգուկանոնին ենթարկելը: Այնուամենայնիվ, նա հիմնավորում է այն փաստը, որ Կովկասում, որում նաև Արևելյան Հայաստանն էր, համահարթվում էին «հինավուրց նահապետական ինքնամփոփվածության մնացորդ հանդիսացող... տեղական առանձնահատկությունները», բնափակ տնտեսությանը փոխարինում էր ապրանքային արտադրությունը, որը և երկրամասը ներգրավում էր ոչ միայն համառուսական, այլև «համաշխարհային ապրանքաշրջանառության մեջ» (նույն տեղը, էջ 755): Այդուհանդերձ, Լենինը Կովկասն իր ամբողջությամբ որակում է որպես Ռուսաստանի գաղութ: Իսկ թե Հայաստանում որքան էր, ըստ Լենինի, զարգացել կապիտալիզմը, մինչև այնտեղ խորհրդային իշխանության հաստատման պահը, երևում է նրանից, որ 1920-ի դեկտեմբերին նա Հայաստանը Բուխարայի և Ադրբեջանի խորհրդային հանրապետությունների հետ միասին դասում է այնպիսի երկրների շարքը, որոնց սոցիալական հենարանը գյուղացիությունն է (տե՛ս ԵԼԺ, հ. 43, էջ 163):

Շուրջ յոթ տասնամյակ անց պատմագիտական միտքը պետք է որ այլևս հարկ չունենա հարցեր տալու: Առկա է փաստը, որը որոշակի վկայում է, թե սոցիալիզմի ժամանակակից մակարդակի գոհացուցիչ չլինելու պատճառները նաև որտեղ պետք է որոնել: Եթե Հայաստանի կոմկուսի մինչև 1920 թ. նոյեմբերի պատմությունը լուսաբանող հեղինակները կարող են դատողություններ անել նախադրյալների մասին, ապա հաջորդ տասնամյակների պատմությունը հետազոտողները շարունակելով պետք է որ նոր զրույց բացեն այդ նախադրյալների կոնկրետ մակարդակի արդեն առկա հետևանքների, ինչպես նաև սոցիալիզմի կառուցման լենինյան տեսությունն աղճատելու և նենգափոխելու ստալինյան մեթոդաբանության հետևանքների մասին:

Վաղուց ժամանակն է, որ ԽՍՀՄ-ում 1920—1930-ական թվականների տնտեսական զարգացման ոչ միայն տեմպերը, այլև մասշտաբներն ու որակական հատկանիշները (ժողովրդական տնտեսության ճյուղային կառուցվածք, արդյունաբերական արտադրանքի տարատեսակություն և որակ) համադրության մեջ դրվեն՝ վերակառուցման և հետագա առաջընթացի համար էլ ավելի արմատական եզրահանգումների նպատակով:

Հավանաբար չի խանգարի, եթե նույն այդ ժամանակամիջոցում ԽՍՀՄ-ում սոցիալիզմի կառուցմամբ ձեռք բերված նյութական արժեքները և հատկապես սոցիալիզմի նյութական հիմքը կազմող ինդուստրացման արդյունքներն իրենց որակական կազմով համադրվեն նույնքան ժամանակամիջոցում (և, ի միջի այլոց, նույն զուգահեռ ժամանակամիջոցում) զարգացման համադրելի մակարդակի վրա կանգնած երկրներում կապիտալիզմի ծավալման ու խորացման նյութատնտեսական արդյունքների հետ:

Լենինն անհամեմատ շատ փաստարկումներ և հիմնավորումներ է կատարել Ռուսաստանում և նրա գաղութային ծայրամասերում հատկապես կապիտալիզմի ներթափանցումը, քան թե զարգացման իմպերիալիզմի փուլ նրանց թևակոխելն ապացուցելու համար: Պատմագիտական միտքն այժմ արդեն ի վիճակի է առարկայական դատողություններ անելու նաև կապիտալիզմի սկզբնափուլից իմպերիալիզմի որոշ միտումների առկայության դեպքում, կոնկրետորեն մեր երկրի արդյունաբերական տեսակետից զարգացած կենտրոնական մարզերում և թույլ զարգացած ու առավել հետամնաց ծայրամասերում— սոցիալիզմին անցման ոչ միատեսակ, յուրօրինակ ձևերի մասին լենինյան ասույթների շուրջը: Դա ակնհայտ կդարձնի գիտական մտքի և ժողովրդական զանգվածների նկատմամբ բռնություններ կիրառելու, ինքնատիպ տեսական, քաղաքական մտածողության ընդունակ շարքային մարդկանցից մինչև աչքի ընկնող գործիչներին ֆիզիկապես բնաջնջելու միջոցով սոցիալիզմը հապճեպ, աղճատ կառուցելու ստալինյան դոկտրինայի խոր հակամարտությունը սոցիալիզմի բուն էությանը:

Նշենք և այն, որ մինչև օրս էլ վիճելի է մնում հայ ազգային կուսակցությունների, մասնավորապես հնչակյան և դաշնակցություն կուսակցությունների, գիտական գնահատման հարցը: Հայկոմկուսի պատմության գիտական շարադրման սովորույ-

թի համաձայն այդ հարցի լուծումը բաժին է ընկել գերազանցապես կուսակցության պատմագրությանը, թեև բացառված չէ, որ դա ոչ պակաս չափով կարող էր, և կարող է, լինել քաղաքացիական պատմագրության գործը: Ինչը չի արված. այդ կուսակցություններից ամեն մեկի պատմության մանրակրկիտ ուսումնասիրությունը ծրագրային փաստաթղթերով, մամուլով, պատմության բոլոր փուլերի գործունեության վերլուծությամբ, դրանց համադրմամբ, կուսակցություններից ամեն մեկի կյանքում հնարավոր էվոլյուցիայի, մետամորֆոզի երևույթների պատճառների և հետևանքների խորազնին հետազոտման միջոցով: Նկատի չի առնված, որ տարբեր փուլերում նրանք տարբեր դիրքորոշումներ են ունեցել, մինչև իսկ սկզբունքային վերապրումներ իրենց սոցիալ-դասակարգային պատկանելության և երևույթների նկատմամբ քաղաքական դիրքորոշումների բնագավառում: Եվ դա իր արտահայտությունն է գտել թե՛ Վ. Ի. Լենինի, թե՛ Ս. Գ. Շահումյանի և թե մյուս ականավոր մարքսիստների աշխատություններում, պատմաբանների, փիլիսոփաների ու տնտեսագետների աշխատություններում:

Վկայակոչենք միայն Վ. Ի. Լենինի մի քանի ասույթները դաշնակցության մասին: 1907 թվականի սեպտեմբերին նա դաշնակցությանը համարում է այն կուսակցություններից մեկը, որոնք պայքարում են հայության մեջ սոցիալիստական պրոլետարիատի վրա ազդեցություն ձեռք բերելու համար (տե՛ս ԵԼԺ, հ. 16, էջ 100—101): Հաջորդ տարվա իր աշխատություններից մեկում նա դաշնակցությանը հիշատակում է սոցիալիստ-հեղափոխականների ագրարային ծրագիրը վերլուծելու առիթով և նշում է, որ դաշնակցությունը «շատ մոտիկ է էսեռներին» (նույն տեղը, էջ 471): Նույն առիթով Վ. Ի. Լենինը գտնում է, որ դաշնակցականների ներկայացուցիչ Սաղաթելյանը ագրարային հարցում կանգնած է էսեռական տեսակետի վրա, ապա վկայակոչում է նույն կուսակցության անդամ Տեր-Ավետիքյանցի խոսքը հողային սեփականության վերաբերյալ. «Հողը համայնական սեփականության սկզբունքներով պետք է պատկանի աշխատավորներին, այսինքն՝ աշխատավոր ժողովրդին և ուրիշ ոչ ոքի» (նույն տեղը, էջ 482): 1914 թ. Վ. Ի. Լենինը դաշնակցությանը հիշատակել է մի քանի ձախ նարոդնիկական ուղղության մանրբուրժուական ազգային կուսակցությունների, այն է՝ հրեական սոցիալիստական բանվորական կուսակցության, բելոռուսական գրոմադայի և վրացական սոցիալիստ ֆեդերալիստների թվում (տե՛ս ԵԼԺ, հ. 24, էջ 385): 1918-ի հուլիսի 29-ին, երբ Բաքվից լուր էր ստացվել, որ աջ դաշնակցականները Բաքվի խորհրդում քվեարկել էին անգլիացիներին քաղաք հրավիրելու օգտին, Լենինը, որ հիմք ուներ այդ կապակցությամբ լրջորեն զայրանալու, դաշնակցությանը որակում է որպես հայկիսասոցիալիստների կուսակցություն (տե՛ս ԵԼԺ, հ. 37, էջ 5): Կրկնենք կիսասոցիալիստներ բառը և խորհենք այդ մասին: Նույն կապակցությամբ ամսի 22-ին Ստ. Շահումյանին հղած հեռագրում Վ. Ի. Լենինը Բաքվի խորհրդի դաշնակցական ֆրակցիան անվանում է «Բաքվի խորհրդի նարոդնիկական ֆրակցիա» (ԵԼԺ, հ. 50, էջ 144): Ստ. Շահումյանի, մյուս հայ լենինյանների արտահայտած կարծիքները և համընկնում են, և տարբեր են: Խորհրդահայ պաշտոնական կարծիքը, պատմագիտական միտքը ևս տարակարծությունների մեջ է: Համենայնդեպս առայժմ պրոբլեմը համակողմանի հետազոտության չի ենթարկվել:

Նույն վիճակն է նաև հնչակյան կուսակցության հարցում, թեև այս դեպքում տարակարծություններն այնքան սուր բնույթ չեն կրում: Բայց այստեղ էլ այն բնութագրվում է հախուռն կերպով որպես մանրբուրժուական կուսակցություն, պատասխան չտալով այն հարցին, թե ինչու են ապա հնչակյաններն իրենք իրենց այդպես հետևողականորեն ու համառորեն միշտ էլ սոցիալիզմի գաղափարների քարոզիչներ և սոցիալիստական կուսակցություն համարել: Մասնավորապես 1905—1907 թվականներին լրջորեն սրվեց հնչակյան կուսակցության հակումը դեպի բոլշևիզմը: Արդեն 1905 թվականին այդ կուսակցության անդամների զգալի մասը հեռացավ նրանից և մտավ ՌՍԴԲԿ-ի մեջ գերազանցապես որպես բոլշևիկներ: Այդ նկատի ունենալով ՌՍԴԲԿ III համագումարում Բաքվի պատվիրակ Պ. Ա. Ջափարիձեն (Ալյոշան) պատվիրակների ուշադրությունը հրավիրում է հնչակյան և դաշնակցական կուսակցությունների տարբերությունների վրա: Տարբեր են նրանք, ասում է նա, գտնելով, որ ըստ այդմ էլ տարբեր պետք է լինի հեղափոխական սոցիալ-դեմոկրատիայի մոտեցումը նրանց նկատմամբ: Դաշնակցության, ինչպես նաև վրացական Սաքարթվելո կուսակցությունների հետ, նրա կարծիքով, ոչ մի համաձայնություն չի կարող լինել, «նրանց դեմ պետք է պայքարել» (տե՛ս «Третий съезд РСДРП...». Протоколы. М., 1959, стр. 369): Մինչդեռ հնչակյանները ցանկություն էին դրսևորում աշխատել ՌՍԴԲԿ-ի հետ, համագործակցել նրան: Ջափարիձեն վկայակոչում է այն փաստը, որ հնչակյանները նույնիսկ ընդունել են ՌՍԴԲԿ ծրագիրը: Հաշվի առնելով այս և մյուս փաստերը, Բաքվի բոլշևիկները շատ անգամներ համագործակցել են նրանց հետ և պատրաստակամ էին այդպես շարունակել:

Չի ուսումնասիրված ու քննարկված և այն, որ դաշնակցությունը և հնչակյանները եղել են ինտերնացիոնալին մասնակցած կուսակցություններ: Չի կշռադատված նաև դաշնակցության՝ որպես 1918-ի մայիսին ստեղծված Հայկական հանրապետության կառավարող, բայց ոչ կառավարության կազմում միակ, կուսակցություն լինելու հանգամանքը: Այս դեպքում էլ և՛ հանրապետությունը, և՛ նրա կառավարությունը հախուռն կերպով անվանվում են դաշնակցական, երբ հանրապետության թե՛ պառլամենտի, թե՛ կառավարության կազմը եղել է բազմակուսակցական, պառլամենտում այլ կուսակցությունների հետ մեկտեղ նաև բոլշևիկ, մենշևիկ, էսեռ դեպուտատներով հանդերձ:

Հեղափոխության զարգացման տարբեր փուլերում բոլշևիկների վերաբերմունքը նույնական չի եղել նաև դեպի սոցիալ-դեմոկրատական բանվորական հայ կազմակերպությունը, որին համապատասխան մշակվել են նրա նկատմամբ տարբեր մոտեցումներ: Սրանք ևս բոլշևիզմի պատմություն են, որի էջերի զգալի մասը՝ հայ բոլշևիկների գրավոր ու պրակտիկ գործունեություն: Մի՞թե ճիշտ չի լինի, եթե այդ էջերը ևս պատշաճ կշռադատությամբ ամփոփված լինեն Հայաստանի կոմկուսի պատմության համապատասխան բաժիններում:

**(Շարունակությունը՝ հաջորդ համարում)**

# ԶՈՐԱՎԻԳ ԼԻՆԵՆՔ ԱՂԵՏԻ ԳՈՏՈՒՆ

Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՄԵԿ ՏԱՐՈՒՑ ԱՎԵԼԻ Է ԱՆՑԵԼ ՀԱՅԱՍՏԱՆԻ հյուսիսում տեղի ունեցած երկրաշարժի օրից, և այսօր հարկ է զգացվում արժեքավորել նրա հետևանքների վերացման, մեր մարդկանց հասած դժբախտության մեղմացման համար արհմիությունների գործադրած ջանքերը:

Այո՛, ահավոր տարերային աղետը ավերեց մեր քաղաքներն ու գյուղերը, անօթևան թողեց հազարավոր ընտանիքների, որբացրեց հարյուրավոր մանուկների և այդ ամենով հանդերձ ցավ պատճառեց բազում արհավիրքներ ու փորձություններ տեսած հայ ժողովրդին: Ահա թե ինչու որքան անցնում է ժամանակը, այնքան ավելի զգալի ու այրող են դառնում մեր ցավն ու վիշտը: Եվ եթե այս պարագայում կա մի սփոփանք, դա այն է, որ մեր վիշտն ու ցավը անկեղծորեն կիսում են մեր մեծ հայրենիքի գրեթե բոլոր ազգերը, արտաքին ու ներքին սփյուռքի մեր հայրենակիցները, աշխարհի շատ երկրների կառավարություններ ու ժողովուրդներ:

Մեր ժողովրդի համար ծանր օրերին հանրապետության արհմիությունների առջև ծառացան նոր, առավել բարդ խնդիրներ: Նրանք մեծ պատասխանատվություն էին զգում՝ բարոյապես ու նյութապես զորավիգ, նեցուկ լինելու զոհվածների ընտանիքներին, հարազատներին, բոլոր տուժածներին: Երկրաշարժի հենց նույն օրը՝ դեկտեմբերի 7-ի երեկոյան, Մոսկվայում շտապ կարգով հրավիրվեց Համամիութենական արհեստակցական միությունների կենտրոնական խորհրդի քարտուղարության նիստ և որոշվեց բոլոր միջոցները գործի դնել՝ օգնելու երկրաշարժից տուժածներին: Այդ օգնությունը մոտիկից իրականացնելու նպատակով հաջորդ օրը հանրապետություն ժամանեց ՀԱՄԿԽ-ի ղեկավարությունը: Մեր նախաձեռնությամբ աղետից տուժած քաղաքներում ու շրջաններում ստեղծվեցին արհմիութենական շտաբներ՝ կազմված Հայաստանի արհեստակցական միությունների խորհրդի քարտուղարներից և պատասխանատու աշխատողներից: Շտաբներն ստանձնեցին բնակչությանն օգնություն ցույց տալու ծանր ու պատասխանատու գործը: Նրանց գործունեության հիմնական նպատակն էր կազմակերպել աղետի վայրից բնակչության շուտափույթ էվակուացումը, տուժած մարդկանց տեղավորել տաք, ապահով ապաստարաններում:

Լենինականում, Կիրովականում, Սպիտակում, Ստեփանավանում, աղետի ենթարկված այլ վայրերում խախտվել էին ներքին կոմունիկացիաները. չկային խմելու ջուր, էլեկտրաէներգիա, ջեռուցում, մարդիկ գիշերում էին բաց երկնքի տակ, խարույկների մոտ: Շատ կարևոր էր այդ պայմաններում, որքան հնարավոր է, շտապ էվակուացնել երեխաներին, կանանց, ծերերին, մանավանդ որ ձմեռ էր, եղանակը բավականին ցուրտ և ամեն մի հապաղում կարող էր է՛լ ավելի լուրջ վնասներ հասցնել, ձգձգման ամեն մի օր կարող էր ունենալ անուղղելի հետևանքներ:

Մարդկանց տեղավորելու համար մենք օգտագործեցինք մեր բոլոր եղած հնարավորությունները: Դրանք են Արզնիի երեք, «Արմենիա», «Հանքավան», «Ջերմուկ», «Արևիկ», «Ծաղկաձոր», «Մարալիկ» առողջարանները, մեր երկու հյուրանոցները՝ «Նաիրին» և «Էրեբունին», հիմնարկ-ձեռնարկությունների բոլոր այն սանատորա-պրոֆիլակտորիումները և պանսիոնատները, տուրիստական հանգրվանները, պիոներական ճամբարները, որոնք ի վիճակի էին ձմռան ամիսներին մարդկանց համար ապահովելու նորմալ կենսապայմաններ: Դրանցում մենք տեղավորեցինք վեց հազարից ավելի մարդ:

Հանրապետության տարածքում, սակայն, մեր ունեցած հնարավորությունները սպառվեցին: Հաշվի առնելով այս հանգամանքը՝ ՀԱՄԿԽ-ը ավելի քան 60 հազար տեղ հատկացրեց երկրի լավագույն առողջարաններում, տուրիստական հանգրվաններում՝ Սև ծովի ափին, Վրաստանում, Ուկրաինայում, Լիտվայում, Մոլդավիայում, Կրասնոդարի երկրամասում, Մերձմոսկովյան շրջանում: Մեր խնդրանքով այդ առողջարաններում և հանգստյան տներում արհմիութենական ուղեգրերով հանգստացող տասնյակ հազարավոր մարդիկ, հասկանալով ստեղծված ծանր վիճակը, ելնելով գթության չգրված օրենքներից, անմիջապես ընդհատեցին իրենց արձակուրդը, հանգիստն ու բուժումը, որպեսզի տեղերը տրամադրվեն Հայաստանում երկրաշարժից տուժածներին:

ՀԱՄԽ-ի և տուժած քաղաքներում գտնվող արհմիութենական շտաբների լարված ու արդյունավետ աշխատանքի շնորհիվ գնացքներով, ինքնաթիռներով, ավտոբուսներով հանրապետությունից դուրս տեղափոխվեց 120 հազար մարդ: Ընդ որում, վերը նշված գոտիների առողջարաններում ու հանգստյան տներում տեղավորվեց 75 հազարը:

Արհմիություններն ստանձնեցին ոչ միայն տուժածներին այդ վայրերը տեղափոխելու և տեղավորելու գործը, այլև բնակության և ապրուստի բոլոր ծախսերը, անկախ նրանից, թե որ առողջարանում է մնալու տուժածը՝ Հայաստանում, թե Միության այլ վայրերում, անկախ նրանց այդտեղ մնալու ժամկետից:

Կարևոր պրոբլեմ էր դպրոցական երեխաների ուսուցման կազմակերպումը: Չէր կարելի այդ գործը թողնել բարձիթողի և, բնականաբար, այն դարձավ արհմիությունների գլխավոր հոգսը: Եվ շուտով, ժողովրդական կրթության մինիստրության հետ համատեղ, ձեռնամուխ եղանք ինչպես հանրապետության, այնպես էլ Միության առողջարաններ, հանգստյան տներ ու պանսիոնատներ ծնողների հետ մեկնած դպրոցականների ուսման նորմալ պայմանների ստեղծմանը: Շատ չանցած սկսեցին գործել մայրենի լեզվով 23 դպրոցներ, առանձին դասարաններ: Դպրոցականներն ապահովվեցին հայերեն դասագրքերով, գրենական պիտույքներով, թերթերով և ամսագրերով: Ընդ որում, Անապա, Եվպատորիա, Օդեսա, Գելենջիկ, Տուապսե մեկնեցին կոմպլեկտավորված դպրոցներ՝ մանկավարժական անձնակազմով, դիրեկտորների ղեկավարությամբ:

Էվակուացումն արդեն ավարտվել էր, սակայն աղետի վայրերում արհմիութենական շտաբները շարունակում էին գործել, նրանց նոր, լարված ու դժվարին գործեր էին սպասում: Այդ շտաբները վերածվեցին արհմիութենական մշտական գործող բյուրոների այնքան ժամանակ, մինչև նորմալ հունի մեջ ընկներ տուժած քաղաքների ու շրջանների կյանքը: Այդ ընթացքում, փոխելով իրենց պարտականությունները, նրանք զբաղվում էին վերակառուցվող-վերականգնվող քաղաքների ու գյուղերի շինարարության և տեղում մնացած աշխատավորների կենցաղային հարցերով:

Հաշվի առնելով այն հանգամանքը, որ տուժածների հիմնական մասը դրամական միջոցների կարիք ունի, արհմիությունն իր բյուջեից աղետի առաջին իսկ օրերից նրանց հատկացրեց գումար՝ յուրաքանչյուրին միանվագ 100 ռուբլու չափով: Այսօրվա վիճակով օգնություն է ստացել ավելի քան 700 հազար մարդ:

Երկրաշարժի հետևանքով տուժած ազգաբնակչության նկատմամբ ջերմ հոգատարություն դրսևորեցին կուսակցությունն ու կառավարությունը: Դրա պերճախոս վկայությունն են ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի ստեղծումը՝ քաղբյուրոյի անդամ, ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի նախագահ Ն. Ի. Ռիժկովի գլխավորությամբ և աղետյալներին օգնություն ցույց տալու վերաբերյալ ԽՍՀՄ Մինիստրների խորհրդի դեկտեմբերի 15-ի որոշումը: Այդ որոշմամբ, ի թիվս բազմաթիվ այլ միջոցառումների, նախատեսվում է երկրաշարժի հետևանքով քաղաքացիների կորցրած ունեցվածքի՝ բնակելի տների, տնտեսական շինությունների, տնային գույքի և մյուս ունեցվածքների արժեքի փոխհատուցում: Որոշմամբ հավանություն տրվեց Համամիութենական արհեստակցական միությունների կենտրոնական խորհրդի առաջարկությանը՝ հանրապետության առջև ծառացած սոցիալական և այլ խնդիրների լուծման համար արհմիության բյուջեից ևս 120 միլիոն ռուբլի գումար հատկացնելու վերաբերյալ:

Տարերային աղետից տուժածների հանդեպ ինտերնացիոնալիստական, մարդասիրական ջերմ զգացումներ դրսևորեցին ոչ միայն մեր Միությունում: Հայ ժողո-

---

*ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ ՄԱՐՏԻՆ ԿԱՐԱՊԵՏԻ — ՀԱՄԽ-ի նախագահ, տեխնիկական գիտությունների թեկնածու:*

վըրդի օրհասական պահին նրան զորավիգ եղան նաև բարի կամքի մարդիկ, աշխարհի տարբեր երկրներ ու միջազգային կազմակերպություններ, արտաքին ու ներքին հայկական սփյուռքը: Չէին դադարում ոչ միայն եղբայրական հանրապետությունների, մարզերի, երկրամասերի, այլև արտասահմանյան արհմիութենական կազմակերպություններից Հայաստանի արհմիությունների հասցեով ուղարկվող ցավակցական հեռագրերն ու նյութական օգնությունը:

Ճիշտ է, մենք դեռ չենք ձերբազատվել մեզ հասած աղետի մղձավանջից, սակայն հիմա, երբ ծանր ու թեթև ես անում մեր արածն ու անելիքը, դրա մասշտաբները, ակամա հանգում ես այն մտքին, թե ինչպես մենք դուրս կգայինք ծանր հարվածի տակից, եթե մեզ օգնության ձեռք չմեկնեին մեր մեծ հայրենիքի ժողովուրդները, եթե աղետի ամենաառաջին, ամենադժվարին ժամերից ամբողջ ուժով չդրսևորվեին մեր միասնության, համախմբվածության և եղբայրության ստեղծարար հնարավորությունները:

ԽՍՀՄ կառավարության նախագահի ղեկավարած ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովը առաջին իսկ օրից օպերատիվորեն լուծում էր հարցերը, այդ բոլոր օրերին, ժամերին հստակորեն ու հմտորեն կոորդինացնում ողջ աշխատանքը աղետի վայրերում, հանրապետությունում և ամբողջ Միությունում:

ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն հանգամանորեն քննարկեց քաղբյուրոյի հանձնաժողովի զեկուցումը Հայաստանում երկրաշարժի հետևանքների վերացման ընթացքի մասին: Ընդունվեց հանրապետության աղետյալ շրջանների համար շատ կարևոր որոշում, որը դարձավ գործունեության ծրագիր:

Հայաստանի, մասնավորապես երկրաշարժից տուժած գոտու աշխատավորները երախտագիտության խոսքեր են ուղղում նաև համամիութենական արհեստակցական միությունների Կենտրոնական խորհրդին՝ նրա նախագահ Ս. Ա. Շալաևի գլխավորությամբ, հանրապետությունում աղետի վայրերում գիշերուզօր տքնաջան աշխատող ընկերներին, երկրի բոլոր արհմիութենական կազմակերպություններին, որոնք այն օրերին անգնահատելի օգնություն ցույց տվեցին մեզ՝ կիսեցին և հնարավորին չափով թեթևացրին մեր վիշտը:

Ամեն ոք, ով ազնիվ սիրտ ունի ու մաքուր խիղճ, օգնում էր ու այժմ էլ շարունակում է օգնել՝ ինչով կարող է: Եվ այլ կերպ չի էլ կարելի պատկերացնել, չէ՞ որ առջևում դեռևս կան ավելի դժվարին անելիքներ՝ ավերակներից բարձրացնել քաղաքներն ու գյուղերը, կյանքի կոչել մարած օջախները, հավատ ու վստահություն ներշնչել մարդկանց վաղվա օրվա նկատմամբ:

Այո՛, արհմիությունների առջև ծառացել էին բազում խնդիրներ, որոնք, անկախ իրենց մասշտաբներից ու բարդությունից, անհապաղ լուծում էին պահանջում: Լուրջ հոգս էր խաթարված հիմնարկ-ձեռնարկությունների վերականգնվող կոլեկտիվներին ցույց տրվող աջակցությունը: Մեզ համար պարզ էր, որ նրանք դուրս են եկել գործունեության բնականոն հունից, խիստ տուժել է կադրային հարցերին վերաբերող գոր-
նրանց փաստաթղթային տնտեսությունը և, բնականաբար, դժվարություններ կծա-
հաշվի առնելով՝ ՀԱՄԽ-ի նախագահության անցած տարվա հունվարի 7-ի նիստում գործնական մթնոլորտում քննարկեցինք երկրաշարժից տուժածներին նպաստներ նշանակելու և վճարելու հարցը: Ընդունած որոշմամբ նպատակահարմար գտանք, աշխատավարձի և ստաժի վերաբերյալ փաստաթղթերի բացակայության դեպքում, ժամանակավորապես անաշխատունակ բանվորներին, ծառայողներին և կոլտնտե-
ինչպես նաև կանանց հղիության ու ծննդաբերության համար, նշանակել որոշակի գումարի նպաստ և վճարումները կատարել ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեների միջոցներից: Վերջիններիս միաժամանակ հանձնարարեցինք, աղետի գոտու հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների և արհկոմների հետ միասին, կազմակերպել համապատասխան փաստաթղթերի վերականգնումը, պարզել մարդկանց ճշգրիտ ստաժն ու միջին վաստակի չափը:

Մեր ընդունած որոշմանը համապատասխան՝ ՀԱՄԽ-ի և ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեների ծառայությունները տեղերում օգնում էին՝ աշխատանքային փաստաթղթերի վերականգնման, արտադրական ստաժի որոշման, կենսաթոշակների ու նպաստների վճարման գործում: Արդյունավետ աշխատանքի շնորհիվ ներկայումս գործնականում դժգոհություններ չկան:

Երկրաշարժից տուժած բնակչությունը բազմակողմանի օգնության, տարատեսակ պարզաբանումների ու բացատրությունների կարիք է զգում: Եվ մենք ջանում



ենք գոհացնել նրանց: Այդ նպատակով անցած տարվա դեկտեմբերի վերջերին ՀԱՄԽ-ին առընթեր կազմակերպեցինք օպերատիվ խմբեր, որոնք երկրաշարժի հաջորդ ամսից մինչև օրս աղետի գոտում անցկացնում են սեմինար-խորհրդակցություններ, բաց դռների օրեր՝ բանվորների ու ծառայողների, սեմինարներ՝ արհմիութենական քաղկոմների ու շրջկոմների աշխատողների համար: Այդ միջոցառումների ժամանակ դրանց մասնակիցները կոնկրետ օգնություն են ստանում աշխատանքային օրենսդրության զանազան հարցերի վերաբերյալ, ծանոթանում արհմիութենական մարմինների ընդունած որոշումներին ու մշակած հրահանգներին:

Աղետի գոտու արհմիութենական կազմակերպությունների գործունեության վերականգնման և հետագա աշխուժացման նպատակով ՀԱՄԿԽ-ի որոշմամբ դեռևս անցած տարվա դեկտեմբերին Լենինական, Կիրովական և Սպիտակ քաղաքներում ստեղծեցինք արհմիութենական բյուրոներ, նրանց հատկացրինք 12 հաստիք և այժմ էլ շարունակում ենք գործնական օգնություն ցույց տալ: Այսպես, մշակել ենք ժամանակավոր կանոնադրություն այդ բյուրոների աշխատանքի մասին: Նրանց վերապահել ենք լայն լիազորություններ՝ քաղաքի ու շրջանի արհմիութենական կազմակերպությունների ղեկավարումն իրականացնելու, տարերային աղետի հետևանքների վերացման ասպարեզում նրանց ծավալած աշխատանքը կոորդինացնելու, աշխատավորների արտադրական, կենցաղային, հանգստի և դաստիարակության հարցերը լուծելու համար: Ընդ որում, բյուրոների լիազորությունների շրջանակի մեջ մտնում են նաև Միության տարբեր վայրերից օգնության եկած շինարարական և այլ կազմակերպությունների կոլեկտիվներ: Նրանց իրավունք է վերապահվել կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների հետ միասին մասնակցել քաղաքի կամ շրջանի սոցիալ-տնտեսական զարգացման պլանի մշակմանն ու իրականացմանը:

Լայն է երկրաշարժից տուժած վայրերի աշխատավորների արհմիութենական մարմինների ցույց տրվող օգնության շրջանակը, բազմաթիվ են դրա ձևերն ու միջոցները: Տարերային աղետի հետևանքների վերացմանն առնչվող շատ հարցեր են քննարկման առարկա դառնում ՀԱՄԽ-ի նախագահությունում, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեներում: Այսպես, անցած տարվա մարտին նախագահության նիստում, գործարար քննարկումից հետո, հաստատեցինք երկրաշարժի հետևանքների վերացման միջոցառումների պլան: Նման միջոցառումներ մշակեցին նաև հանրապետական կոմիտեները: Առավել կարևորության հարցերը քննարկում ենք համատեղ հանրապետության կառավարության և գերատեսչությունների հետ: Ուշադրության արժանի է Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհրդի և ՀԱՄԽ-ի նախագահության համատեղ որոշումը երկրաշարժից տուժած շրջաններում աշխատանքից զրկված մարդկանց զբաղվածությունն ապահովելու միջոցառումների մասին: Այդ կապակցությամբ կոնկրետ և ժամկետավորված հանձնարարություններ տրվեցին հանրապետության մինիստրություններին ու գերատեսչություններին՝ տասն օրվա ընթացքում, շրջանային և քաղաքային խորհուրդների գործկոմների հետ միասին, ճշգրտել երկրաշարժից տուժած աշխատանքային կոլեկտիվների թվակազմը, նրանց ներգրավել իրենց ձեռնարկությունների վերականգնման գործում և շինարարական կազմակերպություններում: Աղետի գոտու ձեռնարկությունների և կազմակերպությունների ղեկավարության առջև խնդիր դրվեց համապատասխան մարմիններին իրազեկ դարձնել արտադրության և սպասարկման ոլորտում թափուր տեղերի մասին կամ աշխատանքից զրկվածներին տեղավորել այլ ռեգիոններում, լայնորեն կիրառել կոոպերատիվ և տնայնագործական աշխատանքի ձևերը: Որոշմամբ կարևորվում է նաև աղետյալներին ժամանակավոր կացարաններով ապահովելու անհրաժեշտությունը:

Հասկանալի է, որոշման ընդունումը ինքնանպատակ չէ, այն ամեն մի ձեռնարկումի հիմքն է: Հետևաբար, ամեն անգամ այս կամ այն որոշումն ընդունելուց հետո մենք հետամուտ ենք լինում դրա կենսագործմանը: Այդպես էլ՝ վերը նշված որոշման առնչությամբ: ՀԱՄԽ-ի աշխատանքի տեխնիկական տեսչությունը, օրինակ, խիստ հսկողություն սահմանեց վերականգնողական գործերով զբաղվածների, այդ թվում ուսանողական բրիգադների աշխատանքային պայմանների նկատմամբ: Մեր խնդրանքով ՀԱՄԿԽ-ը հատուկ աղետի գոտու համար հատկացրեց տեխնիկական հրահանգիչների ինը հաստիք, որպեսզի վերջիններս գործեն անմիջականորեն տեղերում: Նրանք ընտրովի կարգով ստուգել են վերականգնողական աշխատանքներում ներգրավված Ուկրաինայի, ՌԽՖՍՀ-ի, նավթգազշինմինի, գազարդմինի բանվորների արտադրական պայմանները, գործնական օգնություն ցույց տվել աշխա-

կան սանատորիա), Ստեփանավանում (500 տեղանոց հանգստի տուն), Հանքա-
վանում (500 տեղանոց սանատորիա): Կծավալվի նաև տուրիստական օբյեկտների
շինարարությունը: Ավելի քան 2.300—2.400 տեղանոց տուրիստական համալիրներ
կգործարկվեն Սևանի ափին և Երևանում, տուրիստական հյուրանոցներ՝ Լենինա-
կանում, Ծաղկաձորում, Սիսիանում, ճոպանուղիներ՝ Սևանի ափին, Կիրովականում
ու Ջերմուկում: Իսկ Երևանում, Լենինականում, Սպիտակում ու Աբովյանում երևան
կգան սպորտատողջարարական, սպորտային համալիր ու սրահ, ֆիզիկական կուլ-
տուրայի տուն և այլ օբյեկտներ:

Որոշման մեջ նշվում է, որ արհմիութենական օբյեկտների շինարարության մեջ
ներգրավվելու են նաև արտասահմանյան արհմիութենական մի շարք կազմակեր-
պություններ: Այսպես, Չեխոսլովակիայի արհմիությունների հեղափոխական շարժ-
ման կենտրոնական խորհուրդը պատրաստակամություն է հայտնել սեփական մի-
ջոցներով, որպես հայ ժողովրդին նվեր, Սպիտակում կառուցել 840 տեղանոց դըպ-
րոց, որի վրա կծախսվի 1,2 միլիոն ռուբլի: Շինարարությունն ընթանում է, տեղում
եղել են Չեխոսլովակիայի արհմիությունների խորհրդի քարտուղարը, Մոսկվայում՝
ՉԽՍՀ դեսպանության խորհրդականը: Նորվեգիայի արհմիությունները շուտով Ջեր-
մուկ քաղաքում կսկսեն 400 տեղանոց երիկամային հիվանդությունների կենտրոնի
շինարարությունը: Այն շահագործման կհանձնվի 1991 թվականին:

Աղետի գոտում կատարվող վերականգնողական աշխատանքներն արագացնե-
լու նպատակով հարկավոր է ամենուրեք ստեղծել մոբիլիզացիոն վիճակ, ոգևորել
մարդկանց, շինարարների համար ստեղծել արդյունավետ աշխատանքի լայն հնա-
րավորություններ: Այդ առումով վճռական նշանակություն ունի գործարար սոցիա-
լիստական մրցության կազմակերպումը: Անցած տարվա մարտին Հայաստանի կոմ-
կուսի Կենտկոմը, Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԽ-ը և ՀԼԿԵՄ Կենտկոմը որոշում
ընդունեցին երկրաշարժից տուժած քաղաքների ու գյուղերի արագ կառուցման և
վերականգնման համար հանրապետական սոցիալիստական մրցություն կազմա-
կերպելու մասին: Որոշմամբ անչափ կարևորվում են բնակելի տների, արտադրա-
կան, կոմունալ, կուլտուր-կենցաղային նշանակության օբյեկտների, արագացված
շինարարությունը և բարձր որակը: Սահմանվել են փոխանցիկ կարմիր դրոշներ,
հուշադրոշներ, դիպլոմներ, շնորհագրեր՝ մրցությունում հաղթած շինարարական
մոնտաժային ու մասնագիտացված կազմակերպությունների, շինարարական ին-
դուստրիայի և տեղական շինարարական նյութերի ձեռնարկությունների կոլեկտիվնե-
րին, կոմերիտական-երիտասարդական և ուսանողական շինարարական ջոկատնե-
րին շնորհելու համար: Որոշմամբ հավանություն է տրվել ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտ-
կոմի նախաձեռնությանը՝ հանրապետական սոցիալիստական մրցությունում հաղ-
թողներին պարգևատրելու համար մինչև երկրաշարժից տուժած քաղաքների ու
գյուղերի վերականգնողական և շինարարական աշխատանքների ավարտումը, ամեն
տարի առանձնացնել Միության և արտասահմանյան շրջագայության և երիտա-
սարդական հանգստի ճամբարների արտոնյալ ուղեգրեր:

ԽՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի հանձնաժողովի օպերատիվ խորհրդակցության
որոշմամբ, Հայկական ատոմակայանի փակման կապակցությամբ և էլեկտրաէներ-
գիայի խնայողության ռեժիմի ուժեղացման նպատակով, փոփոխություններ են մտցվել
արտադրական միավորումների, կոմբինատների ու արդյունաբերական ձեռնարկու-
թյունների, երկաթուղային տրանսպորտի սոցիալիստական մրցության պայմաննե-
րում: Մշակվել և հաստատվել է Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Մինիստրների
խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի համատեղ որոշումը բնակարանային շինա-
րարության ճշգրտված կոմպլեքսային ծրագրի և հանրապետությունում բնակարա-
նային պրոբլեմի լուծման արագացման համար սոցիալիստական մրցություն կազմա-
կերպելու մասին: Ընդ որում, այն հավասարապես վերաբերում է նաև աղետի գոտու
կոլեկտիվներին:

Այսպիսով, սոցիալիստական մրցությունը դարձել է երկրաշարժի հետևանքների
վերացման, վերականգնողական աշխատանքների արագացման և արդյունավետու-
թյան բարձրացման իսկական երաշխիք: Արհմիութենական կազմակերպությունները
ակտիվորեն մասնակցում են այդ մրցության ծավալմանը, նպաստում դրա հաջողու-
թյանը:

Կուզեի խոսել նաև երկրաշարժի հարուցած դժվարությունների վերացմանն ա-
ռընչվող մի ոչ պակաս կարևոր խնդրի մասին: Խոսքը վերաբերում է աղետի գո-
տում արհմիությունների կազմակերպական արդյունավետ գործունեությանը: Բանն
այն է, որ երկրաշարժի հետևանքով տուժել են նաև հիմնարկ-ձեռնարկությունների



արհմիութենական կոմիտեների տնտեսությունը, ունեցվածքը, աղետի գոտում գոր-
ծում էին մոտ երեք հազար սկզբնական կազմակերպություններ, և արհմիութենա-
կան շատ կոմիտեներ զգալի գործ են արել իրենց տնտեսությունները վերականգ-
նելու և կարգավորելու համար, ծավալել են արդյունավետ գործունեություն: Այժմ
աղետի գոտում կան 223 ազատված արհմիութենական աշխատողներ: ՀԱՄԿԽ-ի
1988 թվականի ապրիլի 28-ի որոշմամբ սահմանվել են արհմիութենական լիազոր-
ված խորհուրդների և կոմիտեների պաշտոններ այն շինարարական ջոկատներում,
որոնք ուղարկվել են օգնելու վերականգնողական աշխատանքներին: Դրանցում ձե-
վավորվում են արհմիութենական սկզբնական կազմակերպություններ: Մի շարք
ճյուղային արհմիությունների կոմիտեներ անցկացրել են պլենումներ՝ աղետի գոտում
վերականգնողական աշխատանքներում ներգրավված արհմիութենական կազմա-
կերպությունների մասնակցությամբ:

Այժմ էլ մեր բոլոր հոգսերը, մեր բոլոր ջանքերը նպատակաուղղված են այն
բանին, որ նախ և առաջ փրկենք մարդկանց, կարգավորենք նրանց ճակատագիրը,
վերացնենք երկրաշարժի ծանրագույն հետևանքները: Մեր հետևում մեր ժողովրդի
հազարամյա գոյատևման պայքարի պատմությունն է: Այսօր ավելի, քան երբևէ,
մենք պետք է ի հայտ բերենք մեր ժողովրդին յուրահատուկ կենսունակությունը, հա-
րատևելու կամքը: Իսկ այդ գործում հսկայական անելիքներ ունեն նաև Հայաստանի
արհմիությունները, աշխատավորական բոլոր կոլեկտիվները: Կասկած չի հարու-
ցում, որ նրանք կանեն ամեն հնարավոր բան՝ աղետի ենթարկված քաղաքների ու
գյուղերի վերականգնմանը հետայսու ևս ակտիվորեն մասնակցելու համար:

Այսօրվա աննախադեպ բարդ պայմաններում, երբ հայ ժողովրդի ողբերգու-
թյունը դարձել է ողջ համաշխարհային հանրության ընդհանուր ցավը, մեզանից
պահանջվում են մեծագույն պատասխանատվություն, կազմակերպվածություն, միաս-
նություն, կորսվածը վերականգնելու աննահանջ վճռականություն: Հայաստանի արհ-
միությունները պետք է գտնվեն այդ պահանջների մակարդակի վրա, հատկապես
որ հանրապետության առջև ծառացել է նաև Ադրբեջանից արտաքսված հայերին
օթևանով ու աշխատանքով ապահովելու դժվարին խնդիրը: Հայաստանի արհմիու-
թյունների անելիքները առավել կարևորվում են այն հանգամանքով, որ աղետի գո-
տում իրականացվող վերականգնողական աշխատանքները մեծապես խոչընդոտ-
վում են Ադրբեջանական ԽՍՀ-ի կողմից ձեռնարկված աննախադեպ տնտեսական
շրջափակմամբ: Տեղական և այլ հանրապետություններից ու արտասահմանից օգ-
նության եկած շինարարական կազմակերպությունները ժամանակին չեն ստանում
անհրաժեշտ տեխնիկա և շինանյութեր, անօթևան մնացած բնակչությունը՝ տնակներ:
Շրջափակումը ըստ էության ղարաբաղյան հարցի քաղաքական լուծման վիժեցման,
երկրաշարժի գոտում էլ ավելի ծանր կացություն ստեղծելու միտումնավոր ու ան-
բարո փորձ է, ինտերնացիոնալիզմն ու բարեկամությունը ոտնահարող լկտի գործո-
ղություն:

Հանրապետության արհմիութենական մարմիններն ու կազմակերպությունները,
ընթանալով կուսակցության հռչակած վերակառուցման կուրսին համաքայլ, իրենց
արժանի ավանդը կներդնեն աղետյալ բնակչությանը ցույց տրվող օգնության, երկ-
րաշարժի հետևանքների վերացման, մեր հանրապետության առջև ծառացած տըն-
տեսական ու սոցիալական զարգացման խնդիրների լուծման հայրենաշահ գործում:

Ջրավիզ լինենք աղետի գոտուն— սա է մեր ընթացիկ և ապագա գործունեու-
թյան նշանաբանը:

քանի անգամ է Ֆրանսիա մեկնել Էրենբուրգը։ Ռուսաստանից հետո, որի մշակույթի ներկայացուցիչն էր նա, Ֆրանսիան երկրորդ հայրենիք էր նրա համար։ Ու երբ Էրենբուրգի գեղարվեստական նկարագիրը, ռուսական հիմքեր ունենալով, մեծապես ենթակա է եղել համաշխարհային ներգործության, ապա ֆրանսիական շեշտերը եղել են ամենազորեղը։

Երրորդ գործոնը, որ մեծագույն հարստությունների թվին է պատկանում, մարդկային շփումներն են։ Բարեկամություն Ռուսաստանի, Ֆրանսիայի, Գերմանիայի, Իսպանիայի, ինչպես նաև մեր երկրի տարբեր ժողովուրդների մարդկանց հետ, այն էլ գրողների ու արվեստագետների հետ, որոնք հայրենի ժողովրդի պատմության ու բնավորության ընդհանրացած կրողներն են։ Երբ մարդը շփվում է իր երկրում Վլադիմիր Մայակովսկու ու Աննա Ախմատովայի հետ, Ֆրանսիայում՝ Պաբլո Պիկասոյի ու Մատիսի, Հայաստանում՝ Եղիշե Չարենցի ու Ավետիք Իսահակյանի հետ, հավասար է մի, ամբողջ գրադարան կարդալուն։ Ու այս բոլորի հետ, երբ նկատի առնենք, որ գործ ունենք ի բնե քանքարավոր մարդու հետ, որ մեր մի տեսածի դիմաց տեսնում է տասը, մի զգացածի փոխարեն զգում է տասնապատիկը, հասկանալի կլինի, թե Էրենբուրգը հոգեկան ինչ հարստություններ է պաշարել։

Հենց այն, որ գիմնազիայում է սովորել, բավական է, որ պարզ լինի, թե ինչ հուսալի հիմքերի վրա է դրվել նրա կրթությունը։ Նրա զգայուն խառնվածքը, սուր միտքը, գումարած աներևակայելի աշխատասիրությունը, ձեռք բերած բազմակողմանի գիտելիքների պաշարը ամբողջացնում են Էրենբուրգի կերպարը, որը շրջտերի և կուտակումների, ընթացքի ու թռիչքների, փաստի և ընդհանրացումների, ժամանակի ոչ այնքան թվաբանական, որքան հանրահաշվական գոյացում է։ Իսկ երբ ասվածին հավելվի այն, որ գործ ունենք ստեղծագործական նկարագրի հետ, որի համար փաստը այնպիսի հետևությունների հիմք է, որը ճիշտ ու իրական լինելով, կրում է լոկ իր անհատականության կնիքը, ապա միանգամայն ակնհայտ է՝ Էրենբուրգը բնության տվածի և ստացածի այն համաձուլվածքն է եղել, որի ասպարեզ գալը պահանջել է տարիներ, հոգու և մտքի անդուլ ջանք։

Սկսել է իբրև բանաստեղծ, և նրա չափածո գրվածքների ժողովածուները մեկը չեն եղել։ Ոչ էլ երեքը։ Գոնե ինձ հայտնի է տասը ժողովածու։ Գրել է արձակ։ Իմ ձեռքի տակ չէ նրա մատենագիտությունը, հետևապես ինձ հայտնի չէ նրա վեպերի ու վիպակների հաշիվը, բայց ես տակավին աշակերտ, կարդացել եմ «Խուլիո Խուրենիտոյի և նրա աշակերտների արտասովոր արկածները» խորագրով վեպը, նաև՝ «Ծխամորճը»։ Նոր էի զբաղեցրել Երևանի համալսարանի ուսանողական նստարանը, որ ծանոթացա նրա նոր վեպին՝ «Օր երկրորդ»։ Ինձ հայտնի էր, որ իմ կարդացած երկու վեպի արանքում նա լույս էր ընծայել մի քանի վեպ, որոնց, ցավոք, ծանոթ չէի։ Հետո, արդեն պատերազմի տարիներին կարդացի «Փարիզի անկումը» վեպը։ Ավելին, եղել եմ այդ վեպի հայերեն թարգմանության հրատարակիչը։ Պատերազմից հետո՝ «Փոթորիկ»։ Այս երկուսն էլ արժանացան պետական մրցանակի։ Այնուհետև, Ստալինի մահից հետո՝ «Ձնհալ»։ Վերջապես՝ «Մարդիկ, տարիներ, կյանք» վեց գրքից բաղկացած հուշագրությունը, որ լույս է տեսել 60-ական թվականներին։

Բացի գեղարվեստական էջերից իմ ձեռքի տակ եղել է գրքերի մի ամբողջ շարք։ Իսկ երբ այս բոլորից հետո հիշենք նրա հոդվածները, գրված առաջին համաշխարհային պատերազմի ռազմաճակատից, որոնց մասին գիտենք կենսագրական նոթերից, Իսպանիայից ուղարկված թղթակցությունները, որոնց հետևել ենք հափշտակությամբ և ափսոսում էինք, թե մենք էլ, երիտասարդ լինելով, ինչու ազատության համար մարտնչող իսպանացիների կողքին չենք։ Վերջապես, համաշխարհային երկրորդ պատերազմի տարիներին գրված կրակոտ հոդվածները սիրելի էին ամենքի համար։ Վառ տպավորություն էին թողնում այդ հոդվածները, և մարդիկ անհամբեր էին, թե երբ են կարդալու նորերը։ Դրանք այնքան սիրելի էին, որ ռազմաճակատի զինվորները, որ թերթն օգտագործում էին թութուն փաթաթելու համար, չէին օգտագործում լրագրի այն մասը, որտեղ Էրենբուրգի հոդվածն էր տպագրված։ Էրենբուրգի հրապարակախոսական գործունեությունը հավասարվել է գեներալի վաստակի հետ։ Նրա գրած հոդվածների թիվը հազարից անցնում է։ Միայն երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ գրած հոդվածներն ամփոփված են երեք ստվար հատորներում։

Էրենբուրգի բեղմնավորությունն արտակարգ է։ Նա ապրեց 76 տարի ընդամենը։ Մարդ զարմանում է, թե ինչպես է նա հասցրել այդ բոլորը գրել։ Որքան էլ արագագիր լիներ, միևնույն է, պատկերացումից դուրս է։ Երբ աչքի առաջ ունենք, որ նրա կյանքի մեծ մասն անիվների վրա է եղել, ապա չես ըմբռնում, թե ինչպես կարող էր այդքան շատ գրել։

Պարզ չէ՞, որ այսպիսի լայն ընդգրկում ունեցող մարդու ուշադրությունից դուրս չպիտի մնային ոչ Հայաստանը, ոչ էլ նրա մարդիկ։ Հենց լոկ այն, որ նա ծանոթ էր «Հայաստանի պոեզիան» բրյուսովյան անթոլոգիային, ինչպես նաև չափածո այդ ծաղկաքաղի խմբագրի՝ հայոց նկատագրին ու նրա բանաստեղծությանը նվիրված ակնարկին, բավական պիտի լիներ, որ նրա հայացքը սևեռվեր բիբլիական երկրի վրա։

Իլյա Էրենբուրգը ուշ է Հայաստան եկել, 1959-ին, երբ արդեն 68 տարեկան էր։ Զարմանալի է, նույնիսկ դժվար է քիչ թե շատ համոզիչ պատասխան գտնել այդ հարցին։ Իսկ ինքն ունի պատասխան, որ ավելի սփոփանք է, քան իրական բացատրություն։ Հետաքրքրություն և սեր Հայաստանի նկատմամբ վաղուց ուներ, բայց գերադասել է ուշ հասակի սերը, որ խելոք է ու խոր երիտասարդական տարիների սիրուց, որ ավելի բոցավառ հափշտակության է նման։

Էրենբուրգի ասածի համաձայն՝ այս երկիրը եկողը պետք է գլխաբաց մտնի, ինչպես ընդունված է Ճապոնիայում, կամ կոշիկները հանած, ինչպես տաճար են մտնում Հնդկաստանում։ Հայաստան երկիրը, ըստ Էրենբուրգի, հին է և իմաստուն։ Բազմադարյան ժողովուրդ լինելով, հայերը հսկայական ավանդույթներ ունեն, բայց ի տարբերություն որոշ հին ժողովուրդների, Հայաստանում ավանդույթները չեն կաշկանդում, ընդհակառակը, թևավորում են։ Հինն ու նորը չի կարելի միմյանցից անջատել։ Հայերը ապրող ժողովուրդ են, ոչ թե աշխարհագրական հասկացությամբ ինչ-որ տարածություն զբաղեցնող երկիր, և ժողովուրդն էլ հարուստ, ճոխ անցյալով, ունի գործուն ներկա ու արդիական գոյությամբ իր խոսքն է ասում աշխարհին։

Սեփական միտքը հաստատելու համար Էրենբուրգը վկայակոչում է ճարտարապետությունը։

Նա ասում է, որ ինքը չի խոսում Հայաստանի հելլենական շրջանի մասին, բաց է թողնում դա և կանգ առնում VII դարի ճարտարապետության վրա։

Ի՞նչն է բնորոշ հայ միջնադարյան ճարտարապետությանը.

1. սակավ ձևեր, հարուստ էություն,
2. պարզություն և ներդաշնակություն,
3. զուսպ և միաժամանակ կրքոտ։

Եզրակացնում է, որ հայ միջնադարյան ճարտարապետությունն արտահայտում է հայ ժողովրդի բնավորությունը։ Ու, իր կարծիքով, դա վառ երևակայության ազդեցություն լինելով, թելադրանք է այն հիմնական գործոնների, որոնց գումարից ծնվում և գոյանում է ժողովրդի արվեստը։ Ըստ նրա՝ այդպես է հայկական բնապատկերը, այդպես է երկրի պատմությունը, այդպես է հայ մարդը։

Մարդը հնարավորություն չունի աշխարհի բոլոր ծագերում լինել։ Բայց հետաքրքրասեր միտքը զբաղված է բոլոր ժողովուրդներով։ Ժողովուրդներին ճանաչելու ամենահուսալի հնարավորություններն արվեստն ու գրականությունն են։ Սրանք էլ տարբեր են իրարից։ Ճարտարապետությունը կարելի է տեսնել և զգալ դարերի շունչը։ Արվեստը, որ նկարներ են, կարելի է տեսնել, ու երբ ունես տեսնող աչք, զգացող սիրտ ու տեսածն ու զգացածն ընդհանրացնող միտք, կկազմես ժողովրդի պատկերացումը։ Լավ իմանալով, որ արվեստագետը, լինի բանաստեղծ, նկարիչ թե ճարտարապետ, հայրենի ժողովրդի, երկրի հարազատ, թերևս ավելի ճիշտ լինի ասել, համատարիմ արտացոլումն է, նախ՝ բնության յուրահատկության, և ապա պատմության, որ և իբրև նախատագիր, և որպես ոգու փիլիսոփայություն իր դրոշմն է դրել քարի, խոսքի, ձայնի, գույնի և գծի վրա։

Բախտավոր է մարդը, ինչպիսին Էրենբուրգն է ու նրա հետ շատ մարդիկ, որ երկիրը չտեսած, արվեստի միջոցով հասու է եղել հայ ժողովրդի գոյության փիլիսոփայությանը. անկախ նրանից՝ ողբերգություն է դա, թե հերոսություն կամ երկուսը միասին առած, ինչպիսին մերն է։ Բայց կրկնակի երջանիկ է նա, ինչպես Էրենբուրգը, որ գրողների ու արվեստագետների միջոցով իմանալով ժողովրդին, հնարավորություն է ստացել նորից ու վերստին հայտնաբերել Հայաստանը, հասկանալով դրա տակ ոչ թե տարածք, այլ նրա վրա ապրող ու ստեղծագործող ժողովուրդ։

Իմ առաջին միտքը, որ համակել է Հայաստան եկած Էրենբուրգին, որ արվեստից ավելի սիրելի է մարդը։ Կարճ է ասված, բայց մենք պետք է իմանանք, որ մարդ ասվածը շատ ավելի հարուստ է, քան իր գրչի ու բրչի, վրձնի տակից դուրս եկած բանաստեղծությունն է, արձանն ու շենքը, կտավը։ Մարդն իր զգացողություններով անեզրական է այն արտահայտչամիջոցների համեմատությամբ, որ տրված են նրան աշխարհը վերստեղծելու համար։

Ինչպիսի՞ն էր Էրենբուրգի Հայաստանում հայտնաբերած հայ մարդը։ Բարի և իմաստուն, խիստ ու մարդկային, խաղաղ և ոգեշունչ, զուսպ և կրքոտ, ստույգ մտածողությամբ և հոգեկան հմայքով օժտված։ Ցավ է զգում Էրենբուրգը, երբ միտքը դառնում է հայոց պատմության արյունոտ էջերին, բայց նա գիտե և մարդկության դասը՝ իր ճանապարհին փորձություններ տեսած ժողովուրդն ավելի խորն է, ավելի հարուստ մտքով։

Կարելի էր այստեղ վերջակետ դնել, որովհետև ամեն ինչ ասված է, առանց փորձ անելու հասկանալ, թե արվեստի առարկայացումն ըստ Էրենբուրգի ում մեջ է թանձրացել։

Երեք անուն նրա ուշադրության կենտրոնում են՝ Ավետիք Իսահակյան, Եղիշե Չարենց, Մարտիրոս Սարյան։ Երբ նա եկավ Հայաստան, մեր մեծագույն նկարիչը կար, իսկ հայ բանաստեղծության երկու հանճարեղ դեմքերը չկային։ Եվ այնուամենայնիվ, Էրենբուրգի համար այդ երեքն են հայ արվեստի ոգու կրողները։ Իսահակյանի մասին քիչ է գրել։ Ավելի նվազ են Չարենցին նվիրված տողերը։ Գրել է այնքան, որքան իմացել է։

Նա բարձր կարծիքի է հայ չափածո գրականության մասին՝ սկսած մեր հին էպոսից։ Եվ ըստ այնմ էլ դատում է թե մեկի, թե մյուսի մասին։ Ծանոթությունն Իսահակյանի հետ հերքել է թվաբանական տեսությունը։ Ժողովրդի մասին դատել ոչ թե ըստ քանակի, այլ որակի։

Մեր նշանավոր հայրենակիցն

ու հեղինակը

# ՏԻԳՐԱՆ ՍԵՐԳԵԵՎԻՉԻ ՄԱՍԻՆ

## (ԱԿԱԴԵՄԻԿՈՍ Տ. Ս. ԽԱՉԱՏՈՒՐՈՎԻ ՀԻՇԱՏԱԿԻՆ)



Կյանքից հեռացավ Տիգրան Սերգեևիչ Խաչատուրովը: Մեկ ամիս էր մնում լրանալու նրա 83 տարին: 22 տարի (1966—1988) **«Вопросы экономики»** ամսագրի անփոփոխ գլխավոր խմբագիրն էր:

Տիգրան Սերգեևիչի գիտական աշխատանքի մասին համոզիչ վկայում են նրա 600 գրքերն ու հոդվածները, մի ամբողջ գրադարան, որոնցից շատերը թարգմանված են աշխարհի տարբեր երկրներում: Զորս բաժին ունի այն՝ տրանսպորտի էկոնոմիկա, կապիտալ ներդրումները և դրանց արդյունավետությունը, ԽՍՀՄ-ի էկոնոմիկան, տնտեսագիտական էկոլոգիա:

Հաջող էր նաև Տիգրան Սերգեևիչի գիտական ու մանկավարժական կարիերան: 34 տարեկանում դոկտոր, պրոֆեսոր, 37-ում՝ ԽՍՀՄ գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ: 1966-ից՝ ակադեմիկոս: 1967—1971 թթ. ԳԱ տնտեսագիտության բաժանմունքի ակադեմիկոս-քարտուղար, վերջին տարիներին՝ Մոսկվայի Մ. Վ. Լոմոնոսովի անվան համալսարանի ամբիոնի վարիչ: Վերաստեղծման պահից մինչև 1988 թ.՝ համամիութենական տնտեսագիտական ընկերության նախագահ, բազմաթիվ կոմիտեների, հանձնաժողովների նախագահ ու անդամ:

Բայց ես ցանկանում եմ ասել այն մասին, ինչը բնորոշ է Տիգրան Սերգեևիչին, իհարկե, իմ պատկերացումներում:

Առաջին հերթին նա մեծ աշխատավոր էր մինչև կյանքի վերջին րոպեն: Աշխատանքը նրա համար կյանք էր, իսկ կյանքը՝ աշխատանք:

Ես մշտապես այդ հատկանիշը նշում եմ որպես գերակշռող՝ տարբեր համայնքների հայերի մոտ, որոնք բուռն իրադարձությունների հետևանքով ցրված են ողջ աշխարհում: Իսկ Տիգրան Սերգեևիչը ծագումով ամենահայտնի հայկական համայնքից էր՝ մոսկովյան, որը Ռուսաստանին տվել է ականավոր գործիչների մի ամբողջ համաստեղություն: Հավանաբար, ոչ միայն տաղանդը և մյուս արժանիքները, այլև բացառիկ աշխատասիրությունը հայերին օգնեցին ամրակայվելու նոր տեղերում, նվաճելու մյուս ժողովրդի հարգանքը, գտնելով նրա հետ համագործակցելու ուղիներ:

Հայերի շրջանում ևս Տիգրան Սերգեևիչը հայտնի էր իր բացառիկ աշխատասիրությամբ: Նա աշխատում էր XIX դարի գիտնական-տնտեսագետի գործելակերպով՝ ինքը կարդում էր, ինքը հաշվարկում, ինքը գրում: Մեր ամսագրում նա անձամբ կարդում էր քննարկմանը ներկայացվող համարյա բոլոր նյութերը:

Տիգրան Սերգեևիչի մյուս հատկանիշը կրթվածությունն էր, նույնպես շատ բանում, ցավոք, կորսված մեր ժամանակներում (հաճախ ոչ իրենց՝ տնտեսագետների մեղքով): Տիգրան Սերգեևիչը սովորել է նշանավոր Լազարյան ճեմարանում, տիրապետում էր մի քանի օտար լեզուների: Եվ այդ իմացությունը նրա համար անձնական գիտական կոչան էր: Նա մշտապես կարդում էր արտասահմանյան գրականություն, լինում էր աշխարհի շատ երկրներում: Եվ այդ ուղևորությունների ժամանակ նա նույնպես մշտապես աշխատում էր, նախ և առաջ շնորհիվ լեզուների իմացության: Տիգրան Սերգեևիչը այն տարիներին է ավարտել Մոսկվայի համալսարանը, երբ համալսարանը չնայած և թուլացել էր առաջին, հետհեղափոխական էմիգրացիայի ալիքից, սակայն այնտեղ ծաղկում էր գիտական պլյուրալիզմը, եռում էին սուր վիճաբանությունները:

Եվ, ի վերջո, եթե խոսենք գլխավորի մասին, որը բնորոշ էր ակադեմիկոս Խաչատուրովին, դա յուրատեսակ վերժամանակայնությունն էր, «ինքնակայունությունը», նույնիսկ, կարելի է ասել, ինչ-որ մեկուսացումը առօրյա կյանքից ու շրջապատողներից: Հարցը գործի արտաքին կողմը չէ, եթե խոսենք դրա մասին, ապա Տիգրան Սերգեևիչը ծանոթ էր շատ մարդկանց հետ, մարդամոտ էր ու մատչելի, մասնակցում էր հրապարակային վիճաբանություններին ու բարեկամական հանդիպումներին: Բայց ինչ-որ «տարածության» զգացում միշտ առկա էր:

Զգիտեմ, դա բնավորության բնական հատկանի՞շ էր, թե մշակվել էր այն բուռն ու ոչ դյուրին տարիներին, երբ Տիգրան Սերգեևիչին հարկ եղավ ապրել, բացառված չէ, որ հենց այդ հատկանիշը օգնեց նրան պահպանվելու իբրև գիտնական, պարզապես մարդ: Սակայն Տիգրան Սերգեևիչի և նրա նման ուրիշ շատ գիտնականների օրինակով ես տեսել եմ, որ ամենաանհավանական պայմաններում մարդը կարող է իրեն պահպանել ոչ միայն ֆիզիկապես, այլև աշխատելով սիրված ոլորտում, նույնիսկ հաջող գիտական կարիերա ձեռք բերել, ակտիվություն չցուցաբերելով տարբեր բնույթի կամպանիաներում, չմասնակցելով դարաշրջանի բազմաթիվ այլանդակություններին կամ էլ իր մասնակցությունը հանգեցնելով անխուսափելի նվազագույնին: Ընդ որում, ինձ զարմացնում էր, թե ինչպես այդ մարդկանց հաջողվում էր պահպանել իրենց այդ օրինավորությունը: Նրանց հետապնդում էր ոչ թե իրենց անձը փրկելու մտայնությունը, այլ գիտությունը՝ ինստիտուտները, ամսագրերը, խորհուրդները ղեկավարելու հնարավորության պահպանումը: Դա նրանց չի ձերբազատում դարաշրջանի համար պատասխանատվությունից: Բայց պետք է հիշել, որ հենց նրանք են, որ երբեմն հողմերից խոնարհվել են մինչև գետին, բայց մնացել են անկոտրում, չկորցնելով իրենց, այդ մարդիկ մեզ՝ երիտասարդներիս համար այն հենակետն էին, որոնք օգնեցին մեզ ոտքի կանգնելու: Որքան էլ տարօրինակ թվա, հենց այդ ուսուցիչները մեզ մոտիկ լինելու շնորհիվ զգալի չափով ավելի մեծ ազդեցություն գործեցին մեզ վրա, քան նրանք, ովքեր հայտնվեցին նամբարներում կամ մեկնեցին արտասահման: Մտավորականության այդ խավի դերը դեռևս պետք է իմաստավորվի: Ինչ-որ բանում ինձ համար Տիգրան Սերգեևիչը հիշեցնում է հենց հեռացվածությունը և ինքնուրույնությունը, այն բոլորը, ինչ օգնեցին նրան պաշտամունքի տարիներին, խոչընդոտ դարձան այն դարաշրջանում, երբ գիտության մեջ կազմավորվեցին դպրոցները, հաճախ նաև խմբավորումներ և երբ գիտական վենի ելքը որոշում էր «խումբը», նրա մտածողությունը և ակտիվությունը: Նման տիպի գիտական ընկերակցությանը Խաչատուրովը ոչ մի դեպքում չէր կարող համակերպվել:

Ես հատուկ ուզում էի խորհրդածել ոչ թե Տիգրան Սերգեևիչի գիտական գործունեության արդյունքների, այլ նրա անհատականության շուրջ, որովհետև, իբրև բացառիկ մարդ, նա մեզ շատ դասեր է թողել բոլոր բնագավառներում: Տիգրան Սերգեևիչը հենց այդպիսի բացառիկություն էր:

ԳԱՎՐԻԼ ՊՈՊՈՎ

**«Вопросы экономики» № 10**

**Л. А. ХУРШУДЯН. Истина — единственный критерий исторической науки. Ереван, Издательство ЕГУ, 1989, 48 стр.**

Այս լարված օրերին, երբ մեր ժողովուրդը, նրա արցախյան հատվածը ազգային-ազատագրական պայքար են մղում հանուն Լեռնային Ղարաբաղի ինքնորոշման ու Հայաստանի հետ վերամիավորման, ընթերցողների լայն շրջանների կողմից մեծ հետաքրքրությամբ են ընդունվում բոլոր այն հրապարակումները, որոնք նվիրված են այդ կենսաթրթիռ պրոբլեմին։

Այս առնչությամբ, հատկապես ուշագրավ են ռուսերեն լույս տեսնող ուսումնասիրությունները։ Գաղտնիք չէ, որ համամիութենական ընթերցողը համարյա ոչինչ չգիտի Արցախում տեղի ունեցող իրադարձությունների դրդապատճառների մասին, հաճախ էլ ապակողմնորոշվում է կենտրոնական մամուլում հրապարակվող իրարամերժ տեղեկություններից։ Դրա համար շատ կարևոր է մեր երկրի լայն հասարակայնությանը ռուսերենով ներկայացնել հրապարակումներ, ուր հավուր պատշաճի վերլուծվեն արցախյան շարժման հանգամանքները, վերականգնվի պատմական ճշմարտությունը։ Նկատենք նաև, որ մեր պատմաբանների, գրողների, հրապարակախոսների երկար տարիների լռությունից օգտվել են հարևան հանրապետության հեղինակները, որոնք, աղավաղելով հայ ժողովրդի պատմության ու մշակույթի բազում դրվագներ, սեփականացրել են մեր հոգևոր արժեքները, կամ պարզապես կեղծել իրական պատմությունը։

Խրախուսելի է Երևանի պետական համալսարանի հրատարակչության նախաձեռնությունը, որը ռուսերեն լույս է ընծայել պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր Լ. Ա. Խուրշուդյանի «Ճշմարտությունը պատմական գիտության միակ չափանիշն է» բրոշյուրը։

Վկայակոչելով ԽՄԿԿ Կենտկոմի «Արդի պայմաններում կուսակցության ազգային քաղաքականությունը» պլատֆորմի նախագիծը՝ հեղինակը հանգամանորեն ցույց է տալիս Ադրբեջանում ծավալված հակահայկական կամպանիայի նոր փուլի պատճառները։

Այստեղ շեշտվում է, որ 1918—1920 թթ. Լեռնային Ղարաբաղը չէր մտնում մուսավաթական Ադրբեջանի կազմում։ Հայտնի է, որ ցարական Ռուսաստանում վարչատարածքային բաժանումը չէր կատարվում ըստ էթնիկական հատկանիշի։ Մինչև 1918 թվականի մայիսը, այսինքն մինչև անդրկովկասյան սեյմի լուծարքի ենթարկվելը, Լեռնային Ղարաբաղը և Զանգեզուրը մտնում էին Ելիզավետպոլի նահանգի, իսկ Նախիջևանի գավառը՝ Երևանի նահանգի մեջ։ Այստեղ ավելի վաղ շրջանի մասին չի ակնարկվում, քանզի ադրբեջանցիները պետականություն չեն ունեցել ու, հետևաբար, խոսք չէր կարող լինել Լեռնային Ղարաբաղը նրանց պատկանելու վերաբերյալ։ Բնութագրելով 1918—1920 թթ. իրադարձությունները՝ հեղինակը ցույց է տալիս, որ արցախցիները վճռական պայքար էին մղում Հայաստանի հետ վերամիավորվելու համար և այն ժամանակվա Ադրբեջանի կառավարողների՝ Հայաստանի տարածքների նկատմամբ ոտնձգությունների դեմ։ Միաժամանակ մեջբերվում է Ադրբեջանի հեղկոմի 1920 թ. նոյեմբերի 30-ի շնորհավորական հեռագիրը Հայաստանի հեղկոմին, ուր մասնավորապես ասված է, որ այսօրվանից վերացվում են բոլոր վեճերը Հայաստանի ու Ադրբեջանի միջև սահմանների վերաբերյալ։ Լեռնային Ղարաբաղը, Զանգեզուրն ու Նախիջևանը համարվում են Հայկական Սոցիալիստական Հանրապետության մասը։

Սակայն դեպքերի ընթացքը փոխվեց. Ստալինի անձնական միջամտությամբ Արցախը բռնագրավվեց։ Այդ մասին հեղինակը տալիս է հակահայկական այդ գործարքի բնութագիրը, բանավիճելով Ադրբեջանի այսօրվա պատմաբանների անհիմն փաստարկումների հետ, գիտական չափանիշներով պաշտպանում պատմական ճշմարտությունը։

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 1, 1990 թ.։ Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն։

Հանձնվել է շարվելու 13.12.1989 թ.։ Ստորագրվել է տպագրելու 31.01.1990 թ.։ ՎՖ 01335։ Ֆորմատ 70×108 1/16։ Թուղթ՝ տպագրական № 2։ Օֆսեթ տպագրություն։ 8,4 պայմանական տպագրական մամուլ։ 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ։ Տպաքանակը՝ 8432։ Պատվեր՝ 1447։ Գինը՝ 25 կոպ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան։ 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2։
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.